## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐ ԴԻՐՔԵՐԸ

*ՍՍՀՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ 250-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ*

**Վ. Ա. ԿՈՏԵԼՆԻԿՈՎ**
Ակադեմիկոս

ՍՍՀՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ 250-ԱՄՅԱԿԸ մեծ իրադարձություն է հայրենական և համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ: Սովետական իշխանության տարիներին ակադեմիան հասել է աննախընթաց ծաղկման, ներառնելով ամենալավագույնը, որ ստեղծել էին նախորդ սերունդները: Միավորելով գիտնականների ջանքերը, պլանավորելով ու կոորդինացնելով նրանց գործողությունները, պայմաններ ստեղծելով նրանց արդյունավետ աշխատանքի համար, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, կոմունիստական կուսակցության անխոնջ հոգատարության և օգնության, ողջ ժողովրդի աջակցության շնորհիվ, դարձել է սովետական գիտնականների խոշոր շտաբը: «Մենք հպարտանում ենք մեր գիտությունների ակադեմիայով,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Այն շրջապատված է կուսակցության և ժողովրդի ուշադրությամբ ու հոգատարությամբ, անձնուրաց ու հավատարմաբար ծառայում է մեր երկրին, համաշխարհային քաղաքակրթությանը: Հայրենական գիտության մեծագույն նվաճումները, որոնք նպաստել են մեր հայրենիքի վերելքին, անմիջականորեն կապված են ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գործունեության հետ»:

Երկու և կես հարյուրամյակի ընթացքում գիտությունների ակադեմիան մարդկությանը տվել է արժեքավոր շատ հայտնագործություններ, որոնք մտել են համաշխարհային գիտության գանձարանը: Մի հայացք գցելով նրա անցած ուղու վրա, տեսնում ենք, թե որքա՜ն շատ բանի է հասել այն նույնիսկ ցարական Ռուսաստանի ծանր պայմաններում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն, ասես, նշանավորեց գիտությունների ակադեմիայի երկրորդ ծնունդը: Նրա պատմության մեջ տեղի ունեցած այդ արմատական շրջադարձը կապված է կոմունիստական կուսակցության ու սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի անվան հետ: Սովետների երիտասարդ հանրապետության առաջին, ամենադժվարին օրերին իսկ կուսակցությունն ու սովետական պետությունը, Լենինի գլխավորությամբ, միջոցներ էին ձեռնարկում գիտական հետազոտությունները երկրում զարգացնելու համար, մշտապես աջակցում գիտնականների գործունեությանը: Չնայած խիստ զբաղվածությանը, Վլադիմիր Իլյիչը ժամանակ էր գտնում զբաղվելու ակադեմիայի գործերով, մեծ չափով հետաքրքրվում նրա աշ-

Տպագրվում է որոշ հապավումներով:

Զնայած երկրի ընդհանուր տնտեսական հետամնացությանը, նրա հոգևոր մշակույթն արագ զարգանում է։ Ռուսական արվեստն ու գրականությունը, որ դարձել էին առաջադիմական ու հեղափոխական ձգտումների արտահայտման հասարակական ամբիոն, XIX դարում հասան համաշխարհային բարձունքների։ Դասակարգային հակասությունների սրման հետ մեկտեղ երկրում աճում էր հեղափոխական-ազատագրական շարժումը։ Ռուսաստանում զարգացող հեղափոխական-դեմոկրատական, ապա նաև մարքսիստական հասարակական միտքն ազդում էր առաջավոր մտավորականության վրա։ Դեմոկրատական ուսանողությունը, համալսարանների առաջադեմ պրոֆեսորներն ու դասախոսներն ակտիվ մասնակցում էին հեղափոխական շարժմանը։

Ցարական ադմինիստրացիան, որը ջանադրաբար հովանավորում էր գիտությունների ակադեմիան, հենվելով պահպանողական գիտնականների վրա և օգտագործելով տարբեր կարգի ձևական սահմանափակումները, ամեն կերպ աշխատում էր ակադեմիան հեռու պահել առաջադիմական հոսանքներից։ Անհաջողության մատնվեցին հասարակայնության առաջավոր շրջանների փորձերը՝ փոփոխելու հնացած ակադեմիական կարգերը։ Երբ 1902 թվականին ակադեմիան որպես պատվավոր անդամ ընտրեց Մաքսիմ Գորկուն, ցարը չհաստատեց այդ որոշումը։ Ինքնակալական կարգն արգելակում էր կուլտուրայի և գիտության զարգացումը Ռուսաստանում։

Զնայած դրան, այդ անբարենպաստ պայմաններում էլ երկրի գիտնականները համաշխարհային գիտությունը հարստացրին գիտական ակնբախ նվաճումներով։ Մեծ հաջողությունների հասան ռուս մաթեմատիկոսները։ Այստեղ ամենից առաջ հարկավոր է նշել ոչ-էվկլիդյան երկրաչափության հիմնադիր Ն. Լոբաչևսկու, Պ. Չեբիշևի ու նրա ստեղծած պետերբուրգյան մաթեմատիկական դպրոցի աշխատությունները թվերի տեսության, հավանականությունների տեսության բնագավառում և մաթեմատիկայի ու մեխանիկայի մյուս բաժիններում։ Նշանակալի են Չեբիշևի աշակերտների՝ Ա. Լյապունովի և Ա. Մարկովի նվաճումները։

Աստղագիտության զարգացման համար էական նշանակություն են ունեցել Պուլկովոյի աստղադիտարանում կատարված աշխատանքները աստղագիտության բնագավառում, գիսաստղերի ու աստղերի ուսումնասիրությունը։ Հետաքրքրական արդյունքներով են բնութագրվում էլեկտրական երևույթների հետազոտությունները։ Հայրենական և համաշխարհային գիտության ակնհայտ հաղթանակն էր ռադիոյի հայտնագործումը Ա. Պոպովի կողմից։

Ակադեմիայում հաջողությամբ զարգանում էին հետազոտությունները օրգանական քիմիայի բնագավառում։ Այստեղ նոր դարագլուխ բացեց Ա. Բուտլերովի ստեղծած քիմիական կազմության տեսությունը։ Համաշխարհային գիտության մեջ խոշորագույն ավանդ հանդիսացավ Դ. Մենդելեևի հայտնագործած քիմիական տարրերի պարբերական սիստեմը, որը դարձավ ժամանակակից քիմիայի տեսական հիմքը, կարևոր դեր խաղաց ատոմի կառուցվածքը պարզելու գործում։

Մեր երկրի բուսական աշխարհի շարունակվող ուսումնասիրությանը զուգընթաց գիտությունների ակադեմիայում զարգանում են կենսաբանության նոր ուղղություններ։ Կարլ Բերի հետազոտությունները դրեցին սաղմնաբանության հիմքը։ Ի. Մեչնիկովի և Ա. Կովալևսկու աշխատություններով ստեղծվեցին համեմատական և էվոլյուցիոն սաղմնաբանությունը, էվոլյուցիոն կազմաբանությունը։ Բարձրագույն նյարդային գործունեության բնախոսությունը՝ որպես գիտություն, իր նվաճումներով պարտական է առաջին հերթին Ի. Սեչենովի և Ի. Պավլովի աշխատություններին։

Ակադեմիայում զգալիորեն զարգանում է պատմագիտությունը, հանդես են գալիս գիտական դպրոցներ արևելագիտության և սլավոնագիտության բնագավառում։ Բարձր մակարդակի է հասնում ռուսաց լեզվի ու գրականության ուսումնասիրությունը։



## 3

Մեծ Հոկտեմբերից հետո համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ հասարակական զարգացման հիմքում դրվեց իրոք գիտական սոցիալական տեսությամբ՝ հեղափոխական մարքս-լենինյան ուսմունքով ղեկավարվող աշխատավորական զանգվածների գիտակցական, նպատակասլաց գործունեությունը։ Գիտությունը համարվեց երկիրը սոցիալիստական հիմունքներով վերափոխելու կարևորագույն գործոն։

Կուսակցությունը, սովետական կառավարությունը, Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էին նվիրում գիտությունների ակադեմիան երկրի տնտեսական ու տեխնիկական զարգացմանը մասնակից դարձնելուն։ Ակադեմիան պատրաստակամություն հայտնեց սկսելու պետական շինարարության պահանջների առաջադրած հարցերի մշակումը։

Իր «Գիտատեխնիկական աշխատանքների պլանի ուրվագրում» (1918 թվականի ապրիլ) Լենինը գիտությունների ակադեմիային առաջարկեց այնպիսի հետազոտությունների ծրագիր, որոնք կապված են արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման, ժողովրդական տնտեսությունը հումքով ապահովելու, արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի էլեկտրիֆիկացման հետ։ Լենինյան գաղափարները խոր դրոշմ թողեցին ակադեմիայի հետագա գործունեության, ողջ սովետական գիտության զարգացման վրա։ Գիտնականների ղեկավարությամբ ակադեմիայում սկսվեց երկրի բնական հարստությունների պլանաչափ ուսումնասիրումը։

Կենսագործելով լենինյան քաղաքականությունը՝ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը կարողացան գտնել գիտությունների ակադեմիայի գործունեությունը պրոլետարական պետության խնդիրների հետ մերձեցնելու ճիշտ գիծը։ Այդ նշանավորեց կտրուկ շրջադարձ ակադեմիայի կյանքում, լայն հորիզոններ բացեց գիտության բուռն վերելքի, պրակտիկայի հետ նրա դաշինքի ամրապնդման համար։

Հաշվի առնելով ակադեմիայի ծառայությունները՝ կուսակցությունն անհրաժեշտ համարեց ամրապնդել նրա ղեկավար դերը երկրի գիտական կյանքում։ 1925 թվականի հուլիսի 27-ին ընդունվեց ՍՍՀՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովետի որոշումը, որով գիտությունների ակադեմիան համարվեց երկրի բարձրագույն համամիութենական գիտական հաստատությունը։ Այն սկսեց կոչվել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության գիտությունների ակադեմիա։

Առաջին հնգամյակների տարիներին սովետական գիտությունը ժողովրդական տնտեսության համակողմանի վերելքի շնորհիվ ձեռք բերեց նյութատեխնիկական հզոր բազա։ Մեծացան պետության հատկացումները գիտական հետազոտությունների համար։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան և գիտական մյուս հաստատությունները համալրվեցին նոր, որակյալ կադրերով։

Աճում էր ակադեմիական գիտական հաստատությունների ցանցը. այդպիսիք սկսեցին ստեղծվել ամբողջ երկրում։ Այն ժամանակ կազմակերպվող ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մշտական գիտարշավները դարձան միութենական հանրապետություններում ակադեմիական գիտության նոր կենտրոնների հենակետեր։ Գիտարշավների աշխատանքների ընդլայնմանը զուգընթաց այդ կենտրոնները դառնում էին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մասնաճյուղեր ու բազաներ։ Մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն ապահովեց ժողովրդական տնտեսության վերելքը, կրթության, գիտության ու մշակույթի աճը Սովետական Միության բոլոր հանրապետություններում։ Դրանով իսկ պայմաններ ստեղծվեցին ազգային գիտական կադրերի պատրաստման համար։

Ակադեմիան սոցիալիստական շինարարության խնդիրների կենսագործմանն ավելի մոտեցնելու, ինչպես նաև կենտրոնական պետական հիմնարկների և գերատեսչությունների հետ ավելի սերտ կապեր հաստատելու նպատակով կառավարության որոշմամբ ակադեմիան Լենինգրադից փոխադրվեց Մոսկվա։

Այս ամենը հնարավորություն ընձեռեց ավելի լայնորեն ծավալելու հետազոտությունները, հասնելու նորանոր մեծ հաջողությունների: Նշանակալի էին հասումները մաթեմատիկայի, ամենից առաջ ֆունկցիաների տեսության և մաթեմատիկական ֆիզիկայի բնագավառում: Ն. Ժուկովսկու, Ս. Չապլիգինի ու նրանց աշակերտների աէրոդինամիկական հետազոտությունները տեսական բազա ստեղծեցին ավիացիայի զարգացման համար: Հիդրոդինամիկայի, առաձգականության տեսության բնագավառում, ոչ գծային տատանումների տեսության ու մեխանիկայի մյուս բաժինների բնագավառներում կատարված հետազոտությունները մեծ նշանակություն ունեցան տեխնիկայի համար:

Զգալի առաջընթաց տեղի ունեցավ տեսական ֆիզիկայի, օպտիկայի, ատոմային միջուկի ֆիզիկայի և պինդ մարմնի ֆիզիկայի ասպարեզներում: Հայտնագործվեցին նոր երևույթներ— լույսից ավելի արագ շարժվող էլեկտրոնի ճառագայթումը, հեղուկ հելիումի գերհոսունությունը, միջուկների սպոնտան բաժանումը: Ինտենսիվորեն զարգանում էին հետազոտությունները բյուրեղագիտության, կիսահաղորդիչների ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի բնագավառում:

Կենսաբանական գիտությունը հարստացավ կենսաքիմիական պրոցեսների օրինաչափությունների, գենետիկական երևույթների բնության, բարձրագույն նյարդային գործունեության մեխանիզմների մասին նորանոր տեղեկություններով: Վ. Ի. Վեռնադսկին գիտությունների սահմանագծերում հիմնեց նոր ուղղություն՝ երկրաքիմիան և առաջարկեց ամբողջական ուսմունք կենսոլորտի մասին:

Լայնորեն ծավալվում էին երկրաբանական և աշխարհագրական հետազոտությունները:

Հումանիտար գիտությունների համար մեծ նշանակություն ունեցավ 1936 թ. նախկին կոմունիստական ակադեմիայի ինստիտուտների հանձնումը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի տնօրինությանը: Այդ նպաստեց ակադեմիայում հասարակական գիտությունների բնագավառի հետազոտությունների ծավալմանը՝ մարքս-լենինյան տեսության հիման վրա:

Ակտիվորեն մասնակցելով ժողովրդական տնտեսության զարգացման պլանների մշակմանն ու իրականացմանը, անմիջական կապեր հաստատելով արտադրական ձեռնարկությունների ու կառույցների հետ, ակադեմիայի գիտնականները նպաստում էին սոցիալիստական շինարարության հրատապ խնդիրների լուծմանը, վիթխարի աշխատանք կատարում մասնագետների որակյալ կադրերի պատրաստման համար:

## 4

Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գիտնականները, ինչպես և թիկունքի բոլոր աշխատողները, պատվով կատարեցին իրենց հայրենասիրական պարտքը հայրենիքի հանդեպ: Նրանց ջանքերն ուղղված էին առաջին հերթին զենքերի ու զինամթերքի կատարելագործմանը, ռազմական արդյունաբերությանը ակտիվ աջակցելուն: Գիտնականների ու կոնստրուկտորների աշխատանքով են ստեղծվել մարտական ինքնաթիռների նորագույն տեսակները, մշակվել է տանկային զրահի արտադրության տեխնոլոգիան, հայտնագործվել են նավերը մագնիսային ականներից պաշտպանելու արդյունավետ միջոցներ, մշակվել է ռադիոլոկացիոն տեխնիկան: Գիտությունների ակադեմիան մեծ ուշադրություն էր նվիրում երկրի արևելյան շրջաններում բնական նոր ռեսուրսների, մասնավորապես Ուրալում երկաթահանքի ու քարածխի, Ղազախստանում պղնձահանքերի, Բաշկիրիայում նավթի հետախուզմանն ու յուրացմանը: Գիտությունների ակադեմիայի գիտնականները, բժիշկների համագործակցությամբ, ստեղծեցին մի շարք կարևոր դեղամիջոցներ: Հասարակագիտության բնագավառի գիտնականներն օգնում էին լուծելու ժողովրդական տնտեսության կազմակերպման հարցերը պատերազմական պայմաններում, կատարում գաղափարական-պրոպագանդիստական լայն աշխատանք:

Չէին դադարում նաև ֆունդամենտալ հետազոտությունները: Այսպես, հաջողությամբ իրականացվում էին աշխատանքները միջուկային ֆիզիկայի բնագավառում, որոնք հանգեցրին միջուկային էներգիայի յուրացմանը: Հայտնագործվեց էլեկտրոնային պարամագնիսային ռեզոնանսի երևույթը, որը դարձավ մոլեկուլների կառուցվածքի հետազոտման նոր արդյունավետ մեթոդի հիմքը:



Այս գործունեության նշանակալի մասն ընթանում էր էվակուացման շատ ծանր պայմաններում և, այդուհանդերձ, շատ բարձր էին հետազոտությունների և դրանց արդյունքների արմատավորման տեմպերը: Գիտնականները, ինչպես և մեր ողջ ժողովուրդը, սերտ համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, աշխատում էին ուժերի ծայրահեղ լարումով, մոտեցնելով հաղթանակը:

Հետպատերազմյան տարիները նշանավորվեցին հասարակության կյանքում գիտության հարաճուն դերով: Նրա առջև ծառացած պետական կարևոր նշանակություն ունեցող գիտատեխնիկական ու սոցիալական խոշորագույն պրոբլեմների լուծման նպատակով կուսակցությունն ու կառավարությունը իրականացրին լայն կոմպլեքսային միջոցառումներ:

60-ական թվականների սկզբներին բոլոր միութենական հանրապետություններն արդեն ունեին իրենց գիտությունների ակադեմիաները, որոնք ստեղծվել էին հիմնականում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի մասնաճյուղերի բազայի վրա:

Զարգանում էր գիտական հաստատությունների ցանցը հենց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայում: 1957 թ. սկսվեց նրա Սիբիրյան բաժանմունքի կազմակերպումը, որը հետագայում դարձավ գիտության խոշորագույն կենտրոն՝ երկրի արևելքում: Կարճ ժամանակամիջոցում այդ բաժանմունքի գիտնականները վիթխարի հաջողությունների հասան ինչպես հիմնարար հետազոտությունների զարգացման, նույնպես և Սիբիրի արտադրաուժերի աճմանը նպաստելու գործում:

Ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության հրատապ պրոբլեմների մշակման նպատակով գիտական կենտրոններ են ստեղծվել Մերձմոսկովյան շրջանում: 1969 թ. ակադեմիայի սիստեմում կազմվեցին Ուրալի և Հեռավորարևելյան գիտական կենտրոնները, որոնք գտնվում են Ռուսաստանյան Ֆեդերացիայի կարևոր տնտեսական շրջաններում:

Միաժամանակ լայնորեն զարգանում էր մինիստրությունների ղեկավարությամբ գործող ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների և ճյուղային ակադեմիաների— գյուղատնտեսական գիտությունների Վ. Ի. Լենինի անվան համամիութենական ակադեմիայի, բժշկական գիտությունների ակադեմիայի, մանկավարժական գիտությունների ակադեմիայի գործունեությունը: Հաջողությամբ հետազոտություններ էին կատարվում նաև բարձրագույն ուսումնական հաստատություններում:

## 5

Այժմ անդրադառնանք սովետական գիտնականների վերջին տասնամյակներում ձեռք բերած ստեղծագործական աշխատանքի մի քանի արդյունքներին:

Մաթեմատիկայում լուծվել են տեսական ու կիրառական բազմաթիվ բարդ պրոբլեմներ: Մաթեմատիկական տրամաբանության, թվերի տեսության, դիֆերենցիալ հավասարումների տեսության, մաթեմատիկական վիճակագրության բնագավառում, ինչպես նաև նոր ուղղություններում, մասնավորապես դիսկրետային մաթեմատիկայում ձեռք բերված մեծ նվաճումները համաշխարհային գիտության մեջ ապահովեցին սովետական մաթեմատիկական դպրոցների առաջավոր դիրքը: Էական ավանդ է ներդրվել հաշվողական մաթեմատիկայի զարգացման ոլորտում, որի նշանակությունը խիստ աճել է էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի երևան գալու առնչությամբ: Խոշոր հաջողություններ կան կառավարման տեսության և կիրառական մաթեմատիկայի մյուս ուղղություններում, որոնց դերը գնալով ավելի է մեծանում էկոնոմիկայի և գիտատեխնիկական առաջընթացի ամենաբարդ պրոբլեմների լուծման գործում:

# ԱԶԳԵՐԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ընթացքում սովետների երկրում ձևավորվեցին նոր, սոցիալիստական տիպի ազգեր, ազգություններ ու ազգային հարաբերություններ: Սոցիալիզմի մեծ նվաճումը հանդիսացավ ազգային հարցի և ժողովուրդների եղբայրական համագործակցության պրոբլեմի հաջող լուծումը: ՍՍՀՄ-ում հաստատված սերտ բարեկամությունն ավելի քան հարյուր իրավահավասար և ազատ սովետական սոցիալիստական ազգերի ու ազգությունների միջև, նրանց համակողմանի համագործակցությունն ու փոխօգնությունը կոմունիզմի շինարարության հզոր շարժիչ ուժն են:*

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ, մեր երկրում վերջնականապես վերացվեց անցյալի ծանր ժառանգությունը՝ նախկինում ճնշված շատ ժողովուրդների դարավոր հետամնացությունը: Ավելի զարգացած ազգերի, հատկապես ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ ամենակարճ ժամկետներում լուծվեց դժվարագույն սոցիալական պրոբլեմը՝ ձեռք բերվեց փաստական հավասարություն ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների միջև:*

*Այդ նվաճումների մեջ, ազգային հարցի հաջող լուծման և սոցիալիստական ազգային հարաբերությունների զարգացման գործում վիթխարի, վճռական դեր կատարեց ՍՍՀ Միության կազմավորումը: Սովետական անկախ հանրապետությունները միասնական միութենական պետության մեջ միավորվելու շնորհիվ միայն մեր երկրի ժողովուրդները, ինչպես կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, կարողացան իրենց նվաճումները պաշտպանել իմպերիալիստական գիշատիչներից, ստեղծել զարգացած սոցիալիստական հասարակություն և հաջողությամբ առաջ ընթանալ կոմունիզմի ուղիով:*

*Սոցիալիզմը ստեղծեց նոր տիպի ազգեր ու ազգային հարաբերություններ, որոնք արմատապես, որակապես տարբերվում են բուրժուական ազգերից և կապիտալիզմի պայմաններում ազգերի միջև տիրող հարաբերություններից:*

*Սոցիալիստական ազգերը ձևավորվել են ինչպես հին, բուրժուական ազգերի արմատական վերափոխման միջոցով (օրինակ՝ ռուս, ուկրաինական, բելոռուսական, վրաց, հայ և այլ ազգեր), այնպես էլ զարգացման կապիտալիստական ստադիան չանցած ազգությունները սոցիալիստական ազգերի մեջ համախմբելու միջոցով (օրինակ՝ կիրգիզական, յակուտական, մորդվական, մարիական և այլ ազգեր):*

*Սոցիալիստական ազգերն արմատապես տարբերվում են բուրժուական*



*ազգերից իրենց տնտեսական և քաղաքական հիմքերով, սոցիալ-դասակարգային կառուցվածքով և հոգևոր կերպարով: Նրանք բնութագրվում են արմատական շահերի և սոցիալ-քաղաքական ձգտումների ու նպատակների ընդհանրությամբ:*

*Սոցիալիստական ազգերի ձևավորման և հետագա զարգացման որոշիչ տնտեսական հիմքն են արտադրության սոցիալիստական եղանակը, սոցիալիստական արտադրահարաբերությունները: Տնտեսական այդ հիմքով էլ պայմանավորված է նրանց դասակարգային նոր կառուցվածքը: Սոցիալիստական ազգերը բաղկացած են բարեկամական դասակարգերից և սոցիալական խմբերից՝ բանվոր դասակարգից, կոլտնտեսային գյուղացիության դասակարգից և ժողովրդական ինտելիգենցիայից:*

*Բուրժուական ազգերը սոցիալիստականի վերափոխվելու պրոցեսում փոխվում է նաև նրանց հիմնական հատկանիշների սոցիալական բովանդակությունը:*

*Սոցիալիստական ազգերից բացի, ՍՍՀՄ-ում գոյություն ունեն նաև մի շարք ազգություններ, որոնց տեսակարար կշիռը երկրի բնակչության ընդհանուր թվաքանակի մեջ աննշան է: Ազգությունների ճնշող մեծամասնությունը սոցիալիստական շինարարության պրոցեսում համախմբվելով՝ դարձան ազգեր: Մնացել են միայն մի շարք ազգություններ, որոնք կոնսոլիդացվելով դեռևս ազգ չեն դարձել: Դրանք գերազանցապես սակավաքանակ ազգություններ են (Ծայր Հյուսիսում, Միջին Ասիայի և Կովկասի մի քանի շրջաններում): Նրանց տարբերությունը սոցիալիստական ազգերից արմատական, սկզբունքային բնույթ չունի: Ազգերի և ազգությունների տնտեսական ու քաղաքական հիմքերը սոցիալիզմի պայմաններում միասնական են: Միասնական է նաև նրանց գաղափարախոսությունը: Բայց ազգությունները, իրենց սակավաքանակության հետևանքով[1], ավելի նեղ ոլորտ ունեն բազմաճյուղ էկոնոմիկա զարգացնելու, տնտեսության բոլոր ճյուղերի համար ազգային կադրեր պատրաստելու առումով, քան ազգերը: Ազգությունների լեզուները չեն կարող կատարել այն բոլոր հասարակական ֆունկցիաները, որոնք հատուկ են սոցիալիստական ազգերի լեզուներին: Մի քանի առավել սակավաքանակ ազգություններ ի վիճակի չեն մայրենի լեզվով զարգացնելու իրենց ազգային գրականությունն ու մամուլը, ստեղծելու իրենց թատրոնները, թանգարանները, համալսարանները և այլն: Իրենց տնտեսական և կուլտուրական զարգացման պրոցեսում նրանք հարում են ուրիշ, ազգակից կամ մոտ սոցիալիստական ազգերին և լայնորեն օգտագործում նրանց մշակույթը: Իհարկե, փոքր ազգություններն ունակ են իրենց միջավայրից առաջ քաշելու և իրոք առաջ են քաշում խոշոր գործիչների՝ հասարակական կյանքի տարբեր ոլորտներում: Սովետական քաղաքացիները, անկախ ազգային պատկանելությունից, կարող են օգտվել մշակույթի բոլոր նվաճումներից և դրսևորել իրենց ընդունակությունները: Բայց տվյալ դեպքում խոսքը ազգային հողի վրա ազգության էկոնոմիկայի ու մշակույթի համակողմանի զարգացման օբյեկտիվ հնարավորությունների մասին է:*

*Սոցիալիստական ազգերից և ազգություններից բացի, ՍՍՀՄ-ում կան նաև ազգային և էթնիկական (կամ էթնոգրաֆիական) խմբեր: Ազգային խմբեր են անվանում մեկ ազգության մարդկանց շատ թե քիչ նշանակալի խմբերին, որոնք այս կամ այն պատճառով կտրվել են իրենց ազգի հիմնական զանգվածից և ապրում են այլ ազգի շրջանում: Եթե այդպիսի խումբը համեմատաբար բազմաքանակ է և ապրում է շատ թե քիչ կոմպակտ կերպով, ապա ըստ էու-*

[1] *Սովետական յուրաքանչյուր ազգության թվաքանակը տատանվում է մի քանի հարյուր մարդու (ամենասակավաքանակները) և մի քանի տասնյակ հազար մարդու միջև: Քանակական այն սահմանը, որը նրանց տարբերում է ազգից, պայմանականորեն կարելի է համարել 80—100 հազար մարդ: Իրենց թվաքանակով այդ սահմանը գերազանցող ժողովուրդները, որպես կանոն, ունեն սոցիալիստական ազգի բոլոր գծերն ու առանձնահատկությունները: (Այս հարցի մասին ավելի մանրամասն տես՝* И. П. Цамерян. Теоретические проблемы образования и развития Советского многонационального государства. М., 1973.

թյան նա չի տարբերվում սոցիալիստական ազգից (օրինակ, լեհերը, գերմանացիները և ուրիշներ)։ Ազգային խմբերի ու ազգերի նույնականությունն ամենից առաջ այն է, որ նրանք ունեն միևնույն տնտեսական ու քաղաքական հիմքը, դասակարգային կառուցվածքը, հոգևոր կերպարը, ընդհանուր շահերն ու սոցիալ-քաղաքական ձգտումները։

Եթե այս կամ այն ազգի հիմնական զանգվածը ապրում է Սովետական Միության որոշակի տարածքում (հանրապետության, մարզի), իսկ նրա առանձին մասեր տարբնակեցված են ուրիշ հանրապետություններում, ապա վերջիններս կազմում են նրա օրգանական մասերը՝ (օրինակ՝ այն ուկրաինացիները, բելոռուսները, վրացիները, հայերը և այլն, որոնք, համապատասխանաբար, ապրում են Ուկրաինայից, Բելոռուսիայից, Վրաստանից, Հայաստանից դուրս և այլն)։ Այդ ազգային խմբերի շրջանում տեղի են ունենում մանր, անջատ մասերի և առանձին անձանց դանդաղ ասիմիլացման (ձուլման) պրոցեսներ այն ազգերի հետ, որոնց միջավայրում նրանք երկար ժամանակ ապրում են։

**Էթնիկական խմբեր** են կոչվում այս կամ այն սոցիալիստական ազգի ներսում եղած այն առանձին խմբերը, որոնք տարբերվում են որոշ առանձնահատկություններով (բարբառը, կենցաղային յուրահատկությունները և այլն)։ Այս վերջիններն աստիճանաբար չքանում են ազգի կոնսոլիդացման պրոցեսում։ Մեր հասունացած սոցիալիստական հասարակության պայմաններում էթնիկական խմբերը գրեթե ամբողջությամբ ասիմիլացվել են ազգերի հետ և արդեն հաշվի չեն առնվում ՍՍՀՄ ազգային կազմի պաշտոնական վիճակագրության կողմից։

ԱԶԳԵՐԻ ԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆՈՐ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԻՊԻՆ համապատասխանում են նաև պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա հիմնված նոր տիպի հարաբերություններ նրանց միջև։ Սոցիալիստական ազգային հարաբերությունները բնութագրվում են ազգերի եղբայրական բարեկամությամբ ու հավասարությամբ, նրանց համակողմանի համագործակցությամբ և փոխօգնությամբ, բարգավաճմամբ և փոխադարձ աստիճանական մերձեցմամբ։

Սովետական բոլոր ազգերի ու ազգությունների համատեղ հերոսական ջանքերով ՍՍՀՄ-ում կառուցվեց զարգացած սոցիալիստական հասարակարգ։ Նրա տնտեսական հիմքն է հանդիսանում զարգացման բարձր մակարդակի հասած ընդհանուր միութենական էկոնոմիկան՝ փոխկապակցված ժողովրդատնտեսական կոմպլեքսը, որն ընդգրկում է բոլոր հանրապետությունների ժողովրդական տնտեսությունը և զարգանում միասնական պետական պլանով՝ ի շահ ամբողջ երկրի և ամեն մի առանձին հանրապետության։ «Սովետական Միության էկոնոմիկան առանձին հանրապետությունների ու մարզերի էկոնոմիկայի գումարը չէ,— նշում է Լ. Ի. Բրեժնևը։— Դա վաղուց ի վեր մի միասնական տնտեսական օրգանիզմ է, որը գոյացել է բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր տնտեսական նպատակների ու շահերի հիման վրա» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 78)։

Ազգային հարաբերությունների բնագավառում զարգացած սոցիալիստական հասարակության համար բնորոշ են՝ ազգային հարցի լրիվ, վերջնական ու անվերադարձ լուծումը և սովետական սոցիալիստական ազգերի ու ազգությունների իսկական իրավահավասարության և փաստական հավասարության հաստատումը, մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության հաստատումը երկրի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, բոլոր ազգերի, ազգությունների բարգավաճման նոր, ավելի բարձր մակարդակի ու նրանց հետագա աստիճանական, ավելի ու ավելի սերտ փոխադարձ մերձեցման ձեռքբերումը, ազգերի ու ազգությունների ինտերնացիոնալ համախմբումը պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի մեջ։

Մեր հասուն սոցիալիստական հասարակությունում այլևս գոյություն չունեն հետամնաց ժողովուրդներ։ Բոլոր սովետական հանրապետությունները, բոլոր ազգերն ու ազգությունները ունեն բարձր զարգացած սոցիալիստական էկոնոմիկա և կուլտուրա։



Իհարկե, սովետական հանրապետությունների, առանձին ազգերի միջև դեռևս կան տարբերություններ նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի այս կամ այն ճյուղի զարգացման ցուցանիշներում։ Բայց այդ տարբերություններն ունեն մասնավոր, հարաբերական և զուտ քանակական բնույթ՝ նրանց որակական միասնության շրջանակներում, որի էությունն արտահայտված է զարգացած սոցիալիզմի հիմնական հատկանիշներում ու առանձնահատկություններում։ Կոմունիստական կուսակցությունը վարում է հանրապետությունների և ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակները հավասարեցնելու քաղաքականություն, որի շնորհիվ վերոհիշյալ տարբերությունները աստիճանաբար նվազում են։

Ազգային հարցի վերջնական լուծումը և ազգերի ու ազգությունների միջև փաստական հավասարության հաստատումը զարգացած սոցիալիստական հասարակությունում ամենևին չեն նշանակում, թե ՍՍՀՄ-ում արդեն չկա չլուծված ազգային և ոչ մի պրոբլեմ։ Ազգային հարաբերությունները «հասուն սոցիալիզմի հասարակության մեջ էլ մի այնպիսի իրողություն են, որը մշտապես զարգանում է, առաջադրում նոր պրոբլեմներ ու խնդիրներ։ Կուսակցությունը մշտապես այդ հարցերը պահում է տեսադաշտում, ժամանակին լուծում դրանք՝ ելնելով ամբողջ երկրի և յուրաքանչյուր առանձին հանրապետության շահերից, կոմունիստական շինարարության շահերից» (Լ. Ի. Բրեժնև, նույն տեղը, էջ 85)։

Արդի փուլում, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, ազգային հարաբերությունների բնագավառում գլխավոր խնդիրներն են՝ ՍՍՀ Միության ըստ ամենայնի ամրապնդումը՝ ելնելով սովետական պետության ընդհանուր շահերից, ինչպես նաև հաշվի առնելով այն կազմող հանրապետություններից յուրաքանչյուրի պայմանները, բոլոր սոցիալիստական ազգերի և ազգությունների հետագա բարգավաճման և նրանց աստիճանական մերձեցման հետևողական իրականացումը, սովետական մարդկանց ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության մշտական կատարելագործումը և անհաշտ պայքարը նացիոնալիզմի ու շովինիզմի բոլոր դրսևորումների ու վերապրուկների դեմ։ Այս բոլոր փոխկապակցված խնդիրները կոմունիզմի կառուցման ընդհանուր ծրագրի օրգանական բաղկացուցիչ մասն են։

ՍՄԿԿ-ն իր ազգային քաղաքականության մեջ խստորեն ղեկավարվում է յուրաքանչյուր ազգի ու ազգության նկատմամբ, նրա զարգացման ու շահերի նկատմամբ առավելագույն չափով ուշադիր լինելու վերաբերյալ լենինյան պատվիրանով։ Նա մեծ ուշադրություն է դարձնում առանձին ազգերի ու ազգությունների զարգացման և նրանցից յուրաքանչյուրի շահերը ամենից ավելի ճշտորեն ողջ սովետական ժողովրդի ընդհանուր շահերի հետ զուգակցելու լավագույն ուղիների որոնումներին։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ ՀԱՆԴԻՍԱՑԱՎ ԱԶԳԵՐԻ վերածննդի ու զարգացման, նրանց էկոնոմիկայի ու կուլտուրայի ծաղկման, ազգային պետականության ստեղծման ու ամրապնդման, ազգերի ու ազգությունների համակողմանի, աստիճանական մերձեցման աղբյուրն ու բազան։ Սովետական ազգերի բարգավաճման և նրանց փոխադարձ մերձեցման այդ օրինաչափ պրոցեսն էլ ավելի է ուժեղանում զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում։

Խոսելով ազգերի բարգավաճման մասին, մենք նկատի ունենք ոչ թե պարզապես այս կամ այն ազգի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բարձր մակարդակի ձեռքբերում, այլ ազգի նյութական և հոգևոր կյանքի այնպիսի զարգացում, որն ազգի այդ բարձր նվաճումները դարձնում է նրա բոլոր անդամների սեփականությունը։ Հասկանալի է, որ նման, միակ ճիշտ ըմբռնմամբ, ազգի բարգավաճման հասկացությունը կիրառելի չէ անգամ ամենից

ցիալական բնույթի հիանալի արտահայտությունն է մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի առաջացումը: «ՍՍՀՄ-ում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման տարիներին առաջացավ մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը,— ասված է «ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:— Նա կազմավորվեց արտադրության միջոցների հանրային սեփականության բազայի վրա, տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կյանքի միասնության, մարքս-լենինյան գաղափարախոսության, բանվոր դասակարգի շահերի ու կոմունիստական իդեալների բազայի վրա» (Լենինյան ուղիով, 1972, № 3): Սովետական ժողովուրդն իրենից ներկայացնում է սոցիալական և ինտերնացիոնալ մի հանրություն: Նա բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի միասնության ու համախմբվածության մարմնավորումն է, ՍՍՀՄ հարյուրից ավելի սոցիալիստական ազգերի ու ազգությունների ինտերնացիոնալ հանրությունն ու ամբողջությունը: Սովետական ժողովրդի անխախտ համախմբվածության և ամրության աղբյուրը բոլոր ազգությունների սովետական մարդկանց շահերի ու նպատակների միասնությունն է, բանվոր դասակարգի առաջատար դերը և կոմունիստական կուսակցության ղեկավարությունը:

Սովետական ժողովրդի մեջ մարմնավորվել է սովետական ազգերի ու ազգությունների ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ միասնությունը: Պատմական այդ ընդհանրության մեջ տեղի է ունենում մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների ազատ և ոչնչով չսահմանափակված, համակողմանի զարգացումը: Ինքը՝ ռեալ իրականությունը, սովետական բոլոր ազգերի ու ազգությունների բարգավաճման իրական փաստերը մերկացնում են հակակոմունիզմի գաղափարախոսների կեղծ, զրպարտչական այն պնդումները, թե իբր մեր երկրում տեղի է ունենում ժողովուրդների «ռուսականացում», թե սովետական ժողովուրդն իբր ձևավորվող միասնական սովետական ռուս ազգն է, որի մեջ բռնի ասիմիլացվում են ոչ ռուս բոլոր ազգերն ու ազգությունները:

Մեր զարգացած սոցիալիստական հասարակությունում հաղթանակել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարախոսությունը: Բայց մեզ մոտ քաղաքականապես տհաս առանձին հետամնաց մարդկանց գիտակցության և վարվելակերպի մեջ դեռևս պահպանվում են նացիոնալիզմի և շովինիզմի վերապրուկները: Այդ վերապրուկների հաղթահարման համար մղվող պայքարը, աշխատավորների դաստիարակումը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով կուսակցության XXIV համագումարի առաջադրած կարևորագույն խնդիրներից են: Դրանց հաջող իրականացումը պահանջում է էլ ավելի կատարելագործել ինտերնացիոնալ դաստիարակության ձևերն ու մեթոդները՝ այդ աշխատանքի փորձը խորապես ուսումնասիրելու և դրա արդյունավետությունն ամեն կերպ բարձրացնելու հիման վրա: Ինչպիսին էլ լինեն նացիոնալիզմի դրսևորման ձևերը, դրանց դեմ մղվող անհաշտ պայքարը սովետական յուրաքանչյուր հայրենասերի ու ինտերնացիոնալիստի կարևոր պարտքն է:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ զարգացումը, սովետական ազգերի ու ազգությունների բարգավաճումն ու աստիճանական մերձեցումը նախադրյալներ են պատրաստում՝ ապագա համաշխարհային կոմունիստական հասարակությունում ազգերի հետագա միաձուլման (այսինքն՝ ազգային բոլոր տարբերությունների վերացման) համար: Արդեն այժմ տեղի է ունենում ազգային որոշ տարբերությունների աստիճանական վերացման պրոցես: Բայց դա դեռևս չի կարելի համարել ազգերի ձուլում: Զարգացած սոցիալիստական հասարակարգի, կոմունիզմի կառուցման արդի փուլում տեղի է ունենում ազգերի համակողմանի բարգավաճում և նրանց աստիճանական փոխադարձ մերձեցում: Ազգերի այդ մերձեցման և պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմավորման հիանալի արտահայտությունն են բոլոր ազգությունների սովետական մարդկանց հոգևոր կերպարի ընդհանուր, ինտեր-



նացիոնալ գծերի ձևավորումը, խոր սերը սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, անսահման նվիրվածությունը կոմունիզմի գործին և անհաշտությունը նրա թշնամիների հանդեպ: Նրան բնորոշում են նաև անհանդուրժողականությունը բոլոր տեսակի ազգային ու ռասսայական անհավասարության, ճնշման ու թշնամության նկատմամբ, կոլեկտիվիզմի և ընկերականության զգացումը, սոցիալիստական վերաբերմունքը աշխատանքի և անհաշտվողականությունը պորտաբուծության, մասնավոր սեփականատիրական հայացքների նկատմամբ, խաղաղասիրությունը, մարդասիրությունը և ատելությունը միլիտարիզմի նկատմամբ, ազգային ու ինտերնացիոնալ, համապետական շահերի անբաժանության ըմբռնումը, հեղափոխական պարտքի ու միջազգային համերաշխության զգացումը և այլն: Այս և սրանց նման ընդհանուր գծերը աճում, զարգանում և արմատավորվում են տարբեր ազգությունների սովետական միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ: Այդ պրոցեսը տեղի է ունենում կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մասսաների մեջ նրա անխոնջ դաստիարակչական աշխատանքի շնորհիվ:

ՍՍՀՄ-ում սոցիալիստական ազգային հարաբերությունների ձևավորման և զարգացման, միասնական սովետական բազմազգ պետությունում իրավահավասար ժողովուրդների եղբայրական համագործակցության հաստատման փորձն ունի միջազգային վիթխարի նշանակություն: Տաշքենդում կայացած միջազգային գիտական կոնֆերանսի մասնակիցներին ուղղված Լ. Ի. Բրեժնևի դիմումի մեջ ասված էր. «Միասնական բազմազգ սովետական սոցիալիստական պետություն ստեղծելու մեր փորձը համաշխարհային ճանաչում է ձեռք բերում, այն աջակցություն է ցույց տալիս, ուժ հաղորդում սոցիալական և ազգային ազատագրության համար պայքարող բոլոր մարտիկներին: Ազատ ժողովուրդների պետական դաշինք կազմելու լենինյան սկզբունքները՝ բոլոր ազգերի ու ազգությունների իրավահավասարության, ազգերի ինքնորոշման, նրանց կամավոր միավորման ու համախմբման սկզբունքները, լրիվ հաստատված են պատմական զարգացման ընթացքով, բարերար ազդեցություն են գործում իմպերիալիզմի դեմ ժողովուրդների մղած ազատագրական պայքարի ծավալման վրա» «Պրավդա, 1972 թ., հոկտեմբերի 17):

ՍՍՀՄ-ում ազգային հարցի լրիվ, հաջող լուծման՝ մարդկության պատմության մեջ առաջին փորձը մեր սոցիալիստական հայրենիքի կողմն է գրավում աշխարհի բոլոր երկրների ժողովուրդների սերը: Այդ փորձը ցույց է տալիս բոլոր ազգությունների աշխատավորների սոցիալական ու ազգային լիակատար ազատագրության գործնականում ստուգված ուղին, արդի առաջադիմության բարձունքներին հասնելու ուղին:

Մոսկվա

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԻ ԵՎ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Տ. Ս. ԽԱՉԱՏՈՒՐՈՎ**
Ակադեմիկոս

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ բարձրացումը սոցիալիզմի ժամանակ տնտեսական աճի ընդհանուր օրինաչափությունն է։ Այն առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում արդի պայմաններում, երբ բնակչության գրեթե լրիվ զբաղվածությունը և բնական ռեսուրսների մշակվածության բավական բարձր մակարդակը սահմանափակում են զարգացման էքստենսիվ գործոնների օգտագործման հնարավորությունները (լրացուցիչ աշխատողների, բնական նոր հարստությունների ներգրավման հաշվին և այլն)։

Սոցիալիզմի ժամանակ արդյունավետության բարձրացումը ինքնահոսով ձեռք չի բերվում։ Պլանայնորեն կարգավորվող հանրայնացված տնտեսության պայմաններում այն կախված է ամենից առաջ էկոնոմիկայի կառավարման ճիշտ կազմակերպումից։ Կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ նշվում էր, որ արդյունավետության բարձրացման պրոբլեմի էությունն այն է, որ աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների ամեն մի միավորի դիմաց էականորեն մեծացնենք արտադրածավալը և ազգային եկամուտը։

Առաջիկա՝ տասներորդ հնգամյակը, ելնելով մեր տնտեսական քաղաքականության ընդհանուր ուղղություններից, ընդգծում էր ընկեր Լ. Ի. Բրեժնևը 1974 թվականի հոկտեմբերին Քիշնևում կայացած հանդիսավոր նիստում, պետք է լինի ամենից առաջ որակի հնգամյակ, արդյունավետության հնգամյակ՝ հանուն ժողովրդի բարեկեցության հետագա աճի։ Այդ կապակցությամբ տնտեսական տեսությունից ու պրակտիկայից պահանջվում է ավելի խոր մշակել հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման էության, չափանիշների և ուղիների հարցերը։

1

Սկզբնական շրջանում, ինդուստրացման և առաջին հնգամյակների տարիներին, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը մեկնաբանվում էր գերազանցապես իբրև տնտեսական զարգացման բարձր տեմպերի արդյունք։ Նման մոտեցումը ուներ և մինչև հիմա էլ ունի իր իմաստը։ Իսկ համախառն և հասարակական արդյունքի, ինչպես նաև ազգային եկամտի ցուցանիշների կիրառումը պլանավորման և տնտեսական հաշվարկների մեջ այն ժամանակ դեռ շատ սահմանափակ էր։

Այդ ցուցանիշների ավելի լայն օգտագործումը սկսվեց հետպատերազմյան տարիներին, և դա իր արտացոլումը գտավ թե՛ գիտական գրականության մեջ և թե պլանային-տնտեսական պրակտիկայում։ 1950-ական թվականներին ՍՍՀՄ-ում մշակվեց կապիտալ ներդրումների արդյունավետության տեսությունը, որի համաձայն արդյունավետությունն սկսեց չափվել արտադրական



ֆոնդերի նկատմամբ ազգային եկամտի և կապիտալ ներդրումների նկատմամբ ազգային եկամտի աճի հարաբերության միջոցով։ Գիտական որոնումների արդյունքը հանդիսացավ «Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետության որոշման տիպային մեթոդիկան», որը հաստատեցին ՍՍՀՄ պետպլանը, պետշինը և գիտությունների ակադեմիան։ Այդ պահից սկսած, ազգային եկամտի կիրառումը որպես ժողովրդական տնտեսության մեջ ստացված արդյունքի ցուցանիշ դարձավ լայնորեն ճանաչված սկզբունք։ Սակայն այդ սկզբունքի և ծախսումների համադրման պրոբլեմը դեռ հետագա մշակման կարիք էր զգում։

Պարզենք հասարակական արտադրության արդյունավետության տեսության մի քանի ելակետային դրույթներ և նշենք հետազոտության շրջանակները։

Արտադրության տնտեսական արդյունավետությունը հասարակական զարգացման ամեն մի աստիճանում տարբեր է թե՛ որակապես, թե՛ քանակապես։ Որպես տնտեսական կատեգորիա, այն որոշվում է յուրաքանչյուր հասարակական ֆորմացիայի հիմնական տնտեսական օրենքով։ Արդյունավետությունն արտահայտում է տվյալ ֆորմացիայի հատուկ տնտեսավարման որակը և հասարակական աշխատանքի ծախսումների ու ստացվող արդյունքների միջև նրան բնորոշ հարաբերակցությունը։

Սոցիալիզմի ժամանակ տնտեսական արդյունավետության ուսումնասիրման խնդիրն է՝ բացահայտել նրա հասարակական էությունը, տնտեսավարման որակն ու արդյունավորությունը՝ հասարակության սոցիալ-տնտեսական նպատակներին հասնելու համար։ Այդ նպատակով որոշվում է հասարակական աշխատանքի՝ իրենց մեծությամբ և կառուցվածքով տարբեր ծախսումների ազդեցությունը հասարակական արտադրության աճի վրա կամ, ընդհակառակը, վերջինիս զարգացումը այդ ծախսումների համեմատ։

Սոցիալիստական արտադրության նպատակն է՝ ամեն կերպ բարձրացնել ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը։ Այդ նպատակին հասնելու հիմքն է սոցիալիստական արտադրության առավելագույն զարգացումը։ Իսկ դա պահանջում է լավագույնս տնօրինել հասարակության բոլոր ռեսուրսները, առավել նպատակահարմար բաշխել ու օգտագործել հասարակական աշխատանքի ծախսումները։ Նայած թե ինչ արդյունքներ են տալիս այդ ծախսումները, հասարակական արտադրության արդյունավետության ձեռք բերված մակարդակով էլ կարելի է դատել տնտեսության կառավարման որակի մասին՝ բառիս լայն իմաստով, տնտեսավարման ճշտության և խելացիության մասին՝ նրա բոլոր «հարկերում»։ Ի վերջո, հասարակական արտադրության արդյունավորությունն էլ որոշվում է նրանով, թե ի՛նչ ժամկետներում և ինչպիսի՛ ծախսումներով են հասնում նպատակին։

Այստեղ մենք մոտենում ենք սոցիալիզմի պայմաններում արդյունավետության չափանիշի բնորոշմանը։ Հավանաբար, այն անհրաժեշտ է քննության առնել հասարակական զարգացման սոցիալ-տնտեսական խնդիրների հետ սերտ կապակցված։ Կապիտալիզմի օրով արդյունավետության չափանիշը մասնավոր տնտեսական շահերի բավարարումն է, առավելագույն շահույթի ստացումը։ Սոցիալիստական սեփականության պայմաններում դրա հիմքում ընկած են ողջ ժողովրդական տնտեսության շահերը, ողջ հասարակության շահերը։ Արդյունավետ է այն ամենը, ինչ առավել մեծ չափով նպաստում է ամենաարագ կերպով լուծելու էկոնոմիկայի առջև դրված խնդիրները։ Աշխատանքային և նյութական ռեսուրսների առավել լրիվ օգտագործումն անհրաժեշտ է ամենից առաջ տնտեսական և սոցիալական աճի ամենալավագույն տեմպերն ապահովելու համար։ Սոցիալիզմի օրոք հասարակական արտադրության արդյունավետության չափանիշի այս ձևակերպումը հայտնի է բավական վաղուց։ Սակայն չափանիշի այս բնորոշման մեջ կա մի էական թերություն՝ բացակայում է քանակական որոշակիությունը։ Ահա ինչու տնտեսական արդյունավետության չափանիշը սահմանելու հետ միասին պահանջ առաջացավ տալ նաև դրա քանակական ցուցանիշները, որոնցով հնարավոր կլիներ հա-

Ամբողջ ժողովրդական տնտեսության համար ազգային եկամուտը եղած ցուցանիշներից լավագույնն է, որի հիման վրա կարելի է դատել հասարակական արտադրության ստացվող արդյունքի մեծության մասին։

Այլ բան է, երբ մենք արդյունավետության ցուցանիշը կիրառում ենք ճյուղերի և առանձնապես ստորին օղակների նկատմամբ։ Ամբողջ ժողովրդական տնտեսության համար մենք ելնում ենք այն դրույթից, որ գների գումարը հավասար է արժեքների գումարին, և այդ պատճառով ազգային եկամտի ընդհանուր մեծությունը արտացոլում է արտադրության իրական ծավալը։ Ժողովրդական տնտեսության սեկտորների՝ գյուղատնտեսության և տրանսպորտի նկատմամբ և հատկապես արդյունաբերության առանձին ճյուղերի նկատմամբ դա այդպես չէ։ Այստեղ շատ դեպքերում լինում է գների երկարատև, եթե ոչ մշտական, շեղում արժեքներից և այդ պատճառով ճյուղային ցուցանիշները կարող են խիստ բարձրացնել կամ իջեցնել արտադրության իրական ծավալները։

Է՛լ ավելի մեծ շեղումներ են լինում առանձին ձեռնարկություններում։ Նման դեպքերում հարկ է լինում դիմելու այսպես կոչված «սուռոգատային» ցուցանիշների, ինչպես, օրինակ, շահույթը կամ համախառն արտադրանքի աճը՝ հաշվարկված համադրելի գներով կամ կատարված ծախսումների գումարով։ Այս ցուցանիշները մենք «սուռոգատային» ենք անվանում այն պատճառով, որ դրանք զգալի չափով արտացոլում են ո՛չ միայն արտադրության աճը, այլև գների փոփոխությունը, ավելի թանկարժեք հումքի օգտագործումը և այլն։

Ներկայումս որպես արդյունավետության ցուցանիշ հաճախ օգտագործվում է ֆոնդահատուցումը (կամ նրան հակառակ մեծությունը՝ ֆոնդատարողությունը)։ Ամբողջ ժողովրդական տնտեսության ֆոնդահատուցումը հաշվարկվում է որպես ազգային եկամտի հարաբերություն արտադրական ֆոնդերի՝ հիմնական և շրջանառու կամ միայն հիմնական ֆոնդերի նկատմամբ։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ֆոնդատարողությունն ու ֆոնդահատուցումը 1955—1974 թվականների ընթացքում փոփոխվել են հետևյալ կերպ[1].

| | 1955 թ. | 1960 թ. | 1965 թ. | 1970 թ. | 1971 թ. | 1972 թ. | 1973 թ. | 1974 թ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Արտադրված ազգային եկամուտը (փաստորեն գործող գներով. մլրդ. ռուբ.) | 98,4 | 145,0 | 193,5 | 289,9 | 305,0 | 313,6 | 337,2 | 350 |
| Հիմնական արտադրական ֆոնդերը համապատասխան տարվա հունվարի 1-ի դրությամբ (1955 թվականի համադրելի գներով. մլրդ ռուբ.) | 111 | 174 | 278 | 422 | 461 | 501 | 543 | 590 |
| Ֆոնդահատուցումը (կոպեկներով՝ ֆոնդերի 1 ռուբլու դիմաց) | 88,6 | 83,3 | 69,6 | 68,7 | 66,2 | 62,6 | 62,1 | 59,3 |
| Ֆոնդատարողությունը (կոպեկներով՝ ազգային եկամտի 1 ռուբլու դիմաց) | 113 | 120 | 144 | 146 | 151 | 160 | 161 | 169 |

[1] Այստեղ և այսուհետև հաշվարկները կատարված են «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը» վիճակագրական տարեգրքերի համապատասխան տարիների տվյալների համաձայն։



Աղյուսակից երևում է, որ ֆոնդահատուցումը իջնում է, իսկ ֆոնդատարողությունը համապատասխանորեն աճում։ Ճիշտ է, վերջին տարիներին տեղի է ունեցել այդ ցուցանիշների որոշ կայունացում։

Հաշվարկումների ժամանակ հաճախ օգտագործվում է նաև աճային ֆոնդահատուցումը։ Այս դեպքում վերցնում են ազգային եկամտի աճի հարաբերությունը արտադրական ֆոնդերի աճի կամ արտադրական ֆոնդերի մեջ կատարված կապիտալ ներդրումների նկատմամբ։ Ստորև բերված աղյուսակում ցույց է տրված այդ հարաբերությունը ութերորդ հնգամյակում և իններորդ հնգամյակի առաջին չորս տարիների համար.

| | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. | 1969 թ. | 1970 թ. | 1971 թ. | 1972 թ. | 1973 թ. | 1974 թ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Արտադրված ազգային եկամտի տարեկան աճը (մլրդ ռուբ.) | 13,9 | 18,1 | 18,6 | 17,8 | 28,0 | 15,1 | 8,6 | 23,6 | 12,8 |
| Արտադրական հիմնական ֆոնդերի տարեկան աճը՝ համապատասխան տարվա հունվարի 1-ի դրությամբ (մլրդ ռուբ.) | 34 | 25 | 26 | 29 | 30 | 39 | 40 | 42 | 47 |
| Աճային ֆոնդահատուցումը (կոպեկներով՝ ֆոնդերի 1 ռուբլու դիմաց) | 40,9 | 72,4 | 71,5 | 61,4 | 93,3 | 38,7 | 21,5 | 56,2 | 27,2 |
| Աճային ֆոնդատարողությունը (կոպեկներով՝ ազգային եկամտի 1 ռուբլու դիմաց) | 245 | 138 | 140 | 163 | 107 | 258 | 465 | 178 | 367 |

Ինչպես տեսնում ենք, աճային մեծությունները աչքի են ընկնում անհամեմատ ավելի մեծ փոփոխականությամբ և անկայունությամբ, քան բացարձակ մեծությունները, որոնց դինամիկայի համար բնորոշ է զարգացման ընդհանուր տենդենցը։ 9 տարվա համար բերված աճային ցուցանիշները նվազագույնից մինչև առավելագույնը տատանվում են ավելի քան 4 անգամ։

Սակայն ֆոնդահատուցման կամ ֆոնդատարողության դինամիկան ինքնին բավական չէ հասարակական արտադրության արդյունավետության մակարդակի մասին դատելու համար։ Դա նշանակում է, որ ֆոնդահատուցման պակասումը (կամ ֆոնդատարողության մեծացումը) դեռ չի վկայում արտադրության արդյունավետության անկման մասին։ Վերջինս կարող է նույնիսկ բարձրանալ, օրինակ, ընթացիկ ծախսումների կամ արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին։ Ըստ էության, կապիտալ ներդրումների արդյունավետության հաշվարկումը զգալի չափով հանգեցնում է միանվագ ծախսումների և ինքնարժեքի համադրման։ Ուստի, որոշ պայմաններում նպատակահարմար է կատարել լրացուցիչ ծախսումներ, եթե ընթացիկ ծախսերի տնտեսումը հատուցում է դրանք նորմատիվ ժամկետների սահմաններում։

Այս բանը ցույց տանք կոնկրետ օրինակներով։ Արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը 1966 թվականի հունվարի 1-ի 150 միլիարդ ռուբլուց աճեցին և 1974 թվականի հունվարի 1-ի դրությամբ հասան մինչև 326 միլիարդ ռուբլու (վերագնահատումից հետո)։ Համախառն արտադրանքը նույն ժամանակամիջոցում 1966 թվականի 247 միլիարդ ռուբլուց աճեց մինչև 490 միլիարդի։ Այսպիսով, արդյունաբերական արտադրանքի ֆոնդատարողությունը 60,7 կոպեկից աճեց մինչև 66,5 կոպեկի, կամ մեկ ռուբլու դիմաց 5,8

կոպեկով։ Նույն ժամանակամիջոցում թողարկված արդյունաբերական արտադրանքի 1 ռուբլու վրա կատարված ծախսումները տարեկան միջին հաշվով պակասել են 0,86 կոպեկով։ Այս համադրումը վկայում է, որ ֆոնդատարողության մեծացումը հատուցվել է արտադրանքի ինքնարժեքի իջեցմամբ՝ 5,8 : 0,86=6,7 տարի։

Ուրեմն, արտադրության արդյունավետության մասին դատելու համար անհրաժեշտ են ոչ միայն ֆոնդատարողության (կամ ֆոնդահատուցման) ցուցանիշները, այլև ընթացիկ ծախսերի տնտեսման ցուցանիշները։

### 3

Այսպիսով, համապարփակ արտադրության համապարփակ արդյունքը հանդիսանում է հասարակական ռեսուրսների, այն է՝ արտադրական ռեսուրսների (հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերի աճի ձևով) և սպառողական բարիքների (արտադրված սպառման առարկաների մասսայի ձևով) աճը։

Նյութական ռեսուրսների աճի այդ մեծությանն անհրաժեշտ է ավելացնել նաև ոչ նյութական բարիքները, որոնք արտահայտվում են մարդկանց որակավորման, գիտելիքների, փորձի, կուլտուրայի, առողջության մակարդակի աճով. այստեղ ևս հարկավոր է առանձնացնել այն, ինչ վերաբերում է նյութական արտադրության աշխատողներին և ազդում է վերջինիս աճի վրա։

Այստեղ ծագում է դժվարին մի հարց՝ այդ մտավոր արժեքների քանակական չափման մասին։ Կրթության արդյունքը որոշելիս ավելի լավը չունենալու պատճառով ինչ-որ չափով որպես օբյեկտիվ ցուցանիշ կարող են ծառայել դրա համար պահանջվող ծախսերը։ Այդ դեպքում, սակայն, հաշվի չեն առնվում գիտելիքներ ձեռք բերելու համար դրանք ստացողների աշխատանքի ծախսումները, և ամենագլխավորը, անտեսվում է արտադրության զարգացման արդյունքը այն գիտելիքների շնորհիվ, որ ստանում են կատարողները և ղեկավարները։

Փորձ և գիտելիքներ ձեռք բերելու շնորհիվ բանվորների որակավորման բարձրացումը նպաստում է աշխատանքի արտադրողականության աճին։ Աշխատանքի արտադրողականությունը չափելով դիֆերենցված ձևով, ըստ բանվորների խմբերի, կարելի է որոշել այն արդյունքը, որ ստացվում է ուսուցման և հմտությունների ու փորձ ձեռք բերելու շնորհիվ։ Հարցը անհամեմատ ավելի բարդ է, երբ մենք որոշում ենք արտադրության ղեկավարների որակավորման բարձրացումից ստացվող արդյունքը։ Հետևությունների համար նյութ կարելի է ստանալ միայն հատուկ վիճակագրական հետազոտությունների, հարցաթերթիկների, հարցումների և այլ տվյալների հիման վրա։

Ժողովրդի առողջության ամրապնդումից ստացվող արդյունքը կարելի է գնահատել, օրինակ, հիվանդության պատճառով աշխատանքից բացակայելու դեպքերը պակասեցնելու շնորհիվ արտադրության կորուստները կրճատելու վերաբերյալ եղած հաշվառման տվյալներով, այսինքն, վերջին հաշվով՝ նույնպես ըստ աշխատանքի արտադրողականության մակարդակի։ Ինչ վերաբերում է մնացած մտավոր արժեքներին, ազատ ժամանակին և այլն, ապա հազիվ թե հնարավոր լինի դրանց տալ քանակական գնահատական, եթե չդիմենք որևէ պայմանական գործակցի։

Այժմ արդյունավետության ցուցանիշ ստանալու համար անհրաժեշտ է վերևում առաջարկված եղանակներով հաշվարկված արդյունքի մեծությունը համադրել դրա համար պահանջվող ծախսումների հետ։ Եթե արդյունքը դիտենք որպես կոտորակի համարիչ, ապա ծախսումները կմտնեն հայտարարի մեջ։

Մեր տնտեսագիտական գրականության մեջ հաճախ որպես ծախսումներ հանձնարարվում է ընդունել հասարակական համախառն արդյունքը։ Ընդսմին նկատի է առնվում, որ այն արտացոլում է տարվա ընթացքում իրականացված անցյալ և կենդանի աշխատանքի ծախսումների ամբողջ գումարը, և այդ հիմք է տալիս դրա հետ համադրելու զուտ արդյունքը՝ իբրև մի էֆեկտ, որն իրաց-



վում է այդ ծախսումների շնորհիվ։ Դրա հետևանքով ստացվում է

$$Э = \frac{v+m}{c+v+m}$$ արտահայտությունը։

Սակայն այս արտահայտությունը չի կարելի դիտել որպես արդյունավետության ցուցանիշ։ Այն իրենից ներկայացնում է տարեկան ազգային եկամտի հարաբերությունը համախառն հասարակական արդյունքի նկատմամբ, կամ զուտ արդյունքի մի բաժինը համախառն արդյունքի մեջ։ Վերջին տարիներին այդ բաժինը ժողովրդական տնտեսության մեջ եղել է այսպիսին.

| | 1960 թ. | 1965 թ. | 1970 թ. | 1971 թ. | 1972 թ. | 1973 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Համախառն հասարակական արդյունքը (մլրդ ռուբ.) | 304 | 420 | 644 | 685 | 717 | 770 |
| Ազգային եկամուտը (մլրդ ռուբ.) | 145 | 194 | 290 | 305 | 314 | 337 |
| Ազգային եկամտի բաժինը (տոկոսներով) | 47,7 | 46,2 | 45,0 | 44,5 | 43,8 | 43,8 |

Աղյուսակից երևում է, որ ազգային եկամտի բաժինը հասարակական արդյունքի մեջ կրճատվում է։ Եվ դա միանգամայն բնական է։ Արտադրողական ուժերի զարգացման համար ընդհանրապես բնորոշ է կենդանի աշխատանքի բաժնի անկումը աշխատանքի ընդհանուր ծախսումներում։ «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը,— ընդգծում էր Կ. Մարքսը «Կապիտալ»-ում,— հենց այն է, որ պակասում է կենդանի աշխատանքի բաժինը, իսկ անցյալ աշխատանքի բաժինը մեծանում, բայց մեծանում է այնպես, որ ապրանքի մեջ ամփոփված աշխատանքի ընդհանուր գումարը պակասում է...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 25, ч. 1, стр. 286)։ Բայց կենդանի աշխատանքի բաժնի օրինաչափ անկումը արտադրված արդյունքի մեջ ամենևին չի նշանակում արտադրության արդյունավետության անկում. այն կարող է և պետք է բարձրանա։

Արդյունավետությունը չափելու նպատակով զուտ եկամտի համադրումը համախառն եկամտի հետ ճիշտ չէ նաև այլ պատճառներով։

Իրոք, համարիչում եղած ազգային եկամուտը ո՛չ միայն տվյալ ժամանակաշրջանի, այլև նախորդ ժամանակաշրջանների ծախսումների արդյունքն է։ Դրա ստացման համար հսկայական նշանակություն ունեն բոլոր արտադրական ֆոնդերը՝ երկար տարիների ընթացքում կատարված կուտակումների արդյունքը։ Շենքերը, կառուցվածքները, սարքավորումները, ճանապարհները, նավահանգիստները՝ այս ամենը ամենաանմիջական մասնակցություն է ունենում արտադրության տվյալ ծավալը, զուտ արդյունքի ծավալը և նրա աճի մեծությունը ձեռք բերելու գործին։

Երբեմն մատնանշում են, թե աշխատանքի միջոցների ծախսումները հաշվի են առնված ամորտիզացիայի մեջ։ Բայց ամորտիզացիան արտացոլում է հիմնական արտադրական ֆոնդերի մի մասը միայն, արտադրության մեջ սպառված նրանց այն բաժինը միայն, որի արժեքը փոխադրված է արդյունքի վրա։ Այդ բաժինը, իհարկե, անհամեմատ ավելի փոքր է կիրառված, գոյություն ունեցող և գոյություն ունենալ շարունակող հիմնական արտադրական ֆոնդերից, թեև նրանց արժեքը պակասել է մաշվելու հետևանքով։ Առանց դրանց անհնարին կլիներ վարել արտադրությունը։ Ուստի չի կարելի հաշվի չառնել նրանց մեջ ամփոփված աշխատանքի ծախսումները։ Հիմնական արտադրական ֆոնդերի այս լրիվ ծավալը չի մտնում համախառն արդյունքի մեջ (վերարտադրության մարքսյան սխեմաներում պայմանականորեն ենթադրվում է, որ այդ ֆոնդերը շրջապտույտ են կատարում տարվա ընթացքում)։ Պատահական չէ, որ «Կապիտալ»-ի II հատորում Կ. Մարքսը հստակորեն տարբերում է սպառված և կիրառված հաստատուն կապիտալը։ Ավելացնենք, որ տարեկան արդյունքի ստորաբաժանումը $c+v+m$-ի ուներ այնպիսի նպատակներ, որոնք կապված են վերարտադրության պրոցեսում հաստատուն և

փոփոխական կապիտալի, ինչպես նաև հավելյալ արժեքի դերի վերլուծության հետ, բայց ոչ թե արդյունքի ու ծախսումների համադրման հետ: Բայց բանը միայն այդ չէ: Ինչպես արդեն նշվեց, մեր վիճակագրության կողմից գործարանային մեթոդով հաշվարկված տարեկան հասարակական արդյունքի ցուցանիշը (որպես առանձին ձեռնարկությունների համախառն արտադրանքի գումար), պարունակում է բազմակի հաշվում: Դրա հետևանքով կոտորակի հայտարարն ստացվում է մեծացած, իսկ ամբողջ կոտորակը՝ փոքրացած:

Գործը քիչ բանով է փոխում նաև որոշ հեղինակների (Ա. Նոտկին) առաջարկած համախառն ծախսումների «կրճատումը» հավելյալ արդյունքի այն մասով, որ կուտակման համար չի օգտագործվում: Համախառն ծախսումների հենց այդ «կրճատված» մեծությունն էլ առաջարկում են դարձնել բանաձևի հայտարարը: Իսկ քանակապես արդյունավետությունը ի՞նչ տեսք կունենա նման հաշվարկման դեպքում: 1972 թվականին (եթե ելնենք 1972 թվականի միջճյուղային հաշվեկշռի վերաբերյալ ՍՍՀՄ ԿՎՎ-ի տվյալներից) այն կազմել է 0,50՝ առանց համախառն ծախսումների «կրճատման» ստացվող 0,44-ի փոխարեն: Ինչպես տեսնում ենք, տարբերությունը այնքան մեծ չէ: Բայց, իհարկե, կարևորը ոչ թե տարբերության փոքրությունն է, այլ էությունը: Հավելյալ արդյունքի առաջարկվող «կրճատումը» չի կարելի հիմնավորված համարել: Բանն այն է, որ հավելյալ արդյունքի այն մասը, որը կուտակման համար չի օգտագործվում, կազմում են կրթության, առողջապահության, սոցիալական ապահովության, ծառայությունների, կառավարման, պաշտպանության և այլնի համար կատարվող ծախսումները: Ուրեմն, ի՞նչ հիմք կա կարծելու, որ այդ բոլոր ծախսումները անհրաժեշտ չեն ժողովրդատնտեսական էֆեկտ (կոտորակի համարիչը) ստանալու համար: Գործնականորեն դրանք բոլորն էլ պետք են դրա համար, և եթե ուղղակի չեն էլ ազդում արտադրության ծավալների աճի վրա (թեև կրթության, առողջապահության և այլ ծախսումները անմիջական ներգործություն ունենում են դրա վրա), ապա դրա համար ստեղծում են որոշ պայմաններ:

4

Ասվածից հետևում է, որ էֆեկտ (զուտ արդյունք, ազգային եկամուտ) ստանալու համար անհրաժեշտ ծախսումները (կոտորակի համարիչը) ճիշտ որոշելու համար հարկավոր է ելնել հետևյալից. նախ, ծախսումները պետք է հաշվել մեկ անգամ, որպեսզի ստանանք նրանց իրական, այլ ոչ թե մեծացված գումարը: Երկրորդ, պահանջվում է հաշվի առնել արտադրության նորմալ գործունեության համար անհրաժեշտ բոլոր նյութական ծախսումները արտադրական ֆոնդերի համար՝ հիմնական և շրջանառու ֆոնդերը և աշխատուժի վարձատրության ֆոնդերը: Ելնելով դրանից, ծախսումների գումարի մեջ հարկավոր է մտցնել նյութական արտադրության աշխատողների կենդանի աշխատանքի լրիվ ծախսումները: Դրանք կարելի է արտահայտել հասարակ աշխատանքի վերածված մարդ-ժամով, իսկ տնտեսական արդյունավետությունը հաշվարկելիս ավելի լավ է դրանց ցույց տալ արժեքային ձևով (նյութական ոլորտի աշխատողների աշխատավարձի և այլ սկզբնային եկամուտների ձևով): Այս ամենը պայմանականորեն կարելի է ընդունել որպես m: Դրան հարկավոր է ավելացնել m մեծությունը, այսինքն՝ կուտակման ամբողջ գումարը, որը կազմվում է շահույթներից, շրջանառությունից գանձվող հարկի մի մասից և այլ հարկերից և այլն: Այսպիսով, արժեքով հաշվի է առնվում արդյունքի արտադրության համար կատարվող կենդանի աշխատանքի ծախսումների ամբողջ մեծությունը: Ըստ տարիների հաշվելու համար որոշում են $\frac{m}{v}$ միջին հարաբերությունը ժողովրդական տնտեսության համար (1972 թվականին, ՍՍՀՄ ԿՎՎ-ի տվյալներով, մոտ մեկ միավոր) և դրան համապատասխան ավելացվում է հաշվեգրված v մեծությունը՝ արդյունքի արտադրության բոլոր ստադիաներում լրիվ ծախսումները (v+m) ստանալու համար: Դրանց են պատկանում ելակետային արդյունքի արտադրության՝ հումքի, վառելանյութի արդյունահանման, էներգիայի արտադրության համար, միջանկա ար-



տադրանքներ, օրինակ, կոմպլեկտավորող հանգույցներ, դետալներ և հետագա մշակման համար օգտագործվող ուրիշ կիսաֆաբրիկատներ թողարկելու և, վերջապես, պատրաստի արդյունք՝ սպառման առարկաներ և արտադրության մեջ կիրառելի աշխատանքի միջոցների պատրաստման համար կատարվող կենդանի աշխատանքի ծախսումները: Նման մոտեցման դեպքում նյութական արտադրության մեջ կենդանի աշխատանքի ծախսումների այդ մասսան ոչ մի կրկնակի հաշիվ չի պարունակում:

Այնուհետև հարկավոր է հաշվի առնել հիմնական միջոցների մաշվածքի արժեքը, վերցնելով ամորտիզացիոն ծախսումների գումարը ելակետային միջանկա և պատրաստի արտադրանքի արտադրության ժամանակ: Այստեղ նույնպես բացառվում է կրկնակի հաշվումը: Հարկավոր է միայն նկատի ունենալ, որ այդ ծախսումները որոշ չափով փոքրացված են ծառայության մի շարք դեպքերում չափազանց երկարատև նորմատիվային ժամկետների հետևանքով:

Այժմ մնում է հաշվել այն ծախսումները, որոնք կարող են հաշվարկված չլինել տվյալ տարում: Դա անհրաժեշտ է այն դեպքերում, երբ, օրինակ, տվյալ տարվա արտադրության մեջ օգտագործված են եղել այն հումքը, նյութերն ու արտադրության մյուս միջոցները, որոնք ձեռք են բերվել և թողարկվել են նախորդ տարում, բայց մնացել են ռեզերվում: Դրանց արժեքը պետք է ավելացնել տվյալ տարվա ծախսումներին: Եվ ընդհակառակը, հարկ է դրանցից հանել արտադրության այն միջոցները, որոնք թողնվում են ապագա տարիների ռեզերվ:

Ասվածից դժվար չէ տեսնել, որ տվյալ տարվա համախառն ծախսումները կրկնակի (և բազմակի) հաշվումից այդ կերպ «զտելուց» հետո ստացվում է մի մեծություն, որը համապատասխանում է վերջնական արդյունքի արժեքին՝ զուտ արտադրանքը (ազգային եկամուտը) պլյուս ամորտիզացիան՝ v+m+a: Այդ դեպքում էֆեկտի հարաբերությունը ծախսումների նկատմամբ (կամ արդյունավետությունը) հավասար կլինի $Э=\frac{v+m}{v+m+a}$ կամ միավորից մի քիչ պակաս (մոտ 0,9)՝ եթե համարիչն ու հայտարարը արտահայտենք միևնույն գներով, և է՛լ ավելի փոքր՝ եթե համարիչը հաշվենք համադրելի, իսկ հայտարարը՝ ընթացիկ, գործող գներով: Այս դեպքում հարկավոր է հաշվի առնել նաև ծախսումների և արդյունքի ստացման միջև ընկած ժամանակի լագը, այսինքն՝ տվյալ տարվա զուտ արտադրանքը հաշվել գոնե նախորդ տարվա ծախսումների վրա: Այն ժամանակ Э-ն 1973 թվականի համար հավասար կլինի ոչ թե 0,9-ի, այլ մոտ 0,93-ի:

Սակայն ռեալ ծախսումները, ինչպես արդեն ասվեց, չեն սահմանափակվում լոկ կենդանի աշխատանքի ծախսումների և ամորտիզացիայի գումարով. արտադրության աճի պայմանն են բոլոր արտադրական ֆոնդերը, առանց որոնց չէր կարող արտադրված լինել ազգային եկամուտը ի՛ր և՛ արժեքային, և՛ ֆիզիկական ծավալով: Ուստի ստացվող արդյունքը հարկավոր է վերագրել ո՛չ միայն ընթացիկ ծախսումներին, այլև ամբողջ նախորդ ժամանակաշրջանում ստեղծված, գործող ֆոնդերի համար կատարված ծախսումներին: Բայց դրանք չի կարելի պարզապես գումարել ընթացիկ ծախսումներին՝ նրանց տարբեր չափականության հետևանքով: Միանվագ ծախսումները նախապես հարկավոր է վերածել տարեկան չափականության: Այդ բանը կարելի է կատարել գործող հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերի տոկոսավորման միջոցով՝ համաձայն արդյունավետության ընդունված նորմատիվի (0,12):

Արտադրական հիմնական և շրջանառու ֆոնդերին հարկավոր է գումարել նաև նյութական արտադրության աշխատողների աշխատավարձի վճարման ֆոնդը կազմելու համար կատարվող ծախսումները, նկատի ունենալով, որ հարկ է լինում այդ վճարումները ավանսավորել շրջանառության լրիվ ցիկլը վերջանալուց առաջ, որից հետո այդ վճարումները կարող են կատարվել արտադրանքի իրացումից ստացվող հասույթից: Եթե այդ ֆոնդն ընդունենք R, ապա ավանսավորված ֆոնդերի ամբողջ մեծությունը, որը անհրաժեշտ է



3. «Լենինյան ուղիով», № 10

արտադրությունը գործարկելու համար, հավասար կլինի $F_{հիմն.}+F_{շրջան.}+R$: Այս մեծությունը տարեկան չափականության վերածելուց հետո կստանանք. $E(F_{հիմն.}+F_{շրջան.}+R)$ կամ $E+F$:

Այդքան ամեն տարի հարկ կլիներ մուծել բանկ (ընթացիկ ծախսումներից և շահույթից բացի), եթե ձեռնարկության գործարկման համար անհրաժեշտ միջոցները նրանցից վերցրված լինեին 12 տոկոսի հաշվով (արդյունավետության նորմատիվը):

Այդ դեպքում հասարակական արտադրության արդյունավետությունը՝ որպես էֆեկտի հարաբերությունը ծախսումների նկատմամբ կարելի է արտահայտել՝ $\text{Э}=\frac{v+m}{v+m+a+EF}$ կամ $\text{Э}=\frac{D}{P+EF}$, որտեղ D-ն ազգային եկամուտն է, իսկ P-ն՝ վերջնական արդյունքը: Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ բացարձակ արտահայտությամբ այդ մեծությունը 1974 թվականի համար հավասար է 0,74-ի, եթե D-ն=350 միլիարդ ռուբլու, P-ն=375 միլիարդ ռուբլու, E-ն=0,12 և F-ն=890 միլիարդ ռուբլու (կլոր հաշվով, հիմնական արտադրական ֆոնդերը, 1974 թվականի հունվարի 1-ի դրությամբ, կազմում են 675 միլիարդ ռուբլի. շրջանառու ֆոնդերը, կոլտնտեսությունների հետ միասին՝ 185 միլիարդ ռուբլի, աշխատավարձի վճարման ավանսավորված ֆոնդը՝ 30 միլիարդ ռուբլի, լավը՝ մեկ տարի): Այս ամբողջ բերված հաշվարկը չի հավակնում լինել բացարձակ ճիշտ: Սակայն, մեր կարծիքով, վիճակագրական օրգանները ի վիճակի են կատարելու բոլոր անհրաժեշտ մեծությունների ճիշտ հաշվառում՝ որոշելու համար հասարակական աշխատանքի տարեկան իրական ծախսումները, որոնք հնարավոր լիներ համադրել դրանցից ստացվող արդյունքի հետ՝ ազգային եկամտի ձևով: Մասնավորապես, շատ կարևոր կլիներ, համախառն արտադրանքը գործարանային մեթոդով հաշվարկելու գոյություն ունեցող կարգի հետ միասին կազմակերպել զուտ կամ պայմանականորեն-զուտ արտադրանքի հաշվառում, յուրաքանչյուր ձեռնարկության համար որոշելով ավելացված մշակման արժեքը:

Անհրաժեշտ է ձգտել այն բանին, որ $\text{Э}=\frac{D}{P+EF}$ հարաբերությունը լինի առավելագույն: Սակայն այստեղ ծագում է մի շատ կարևոր հարց. ինչպիսի՞ ժամկետում պետք է ձեռք բերվի այդ առավելագույն չափը: Այս հարցի պատասխանից էլ կախված է և՛ պահանջվող ծախսումների մեծությունը և՛ դրանց կառուցվածքը: Ժամանակին այս պրոբլեմը ուսումնասիրում էր Ա. Նոտկինը: Նա ցույց է տվել, որ ծախսումները միանգամայն տարբեր կլինեն, եթե հարց դնենք հասնել հնարավոր առավելագույնին, ասենք, յուրաքանչյուր մոտակա տարվա ընթացքում, կամ քիչ թե շատ երկարատև ժամանակաշրջանի՝ 15—20 տարվա վերջին, կամ, վերջապես, ամբողջ ժամկետի ընթացքում: Բոլոր դեպքերում կապիտալ ներդրումների կամ ընթացիկ տնտեսման ծավալներն ստացվում են տարբեր: Ինչպես ցույց են տալիս հաշվարկները, ամենից ավելի քիչ ծախսումներ պահանջում է երկարատև ժամանակաշրջանի վերջին առավելագույն արդյունքի հասնելու տարբերակը, ամենից ավելի մեծ ծախսումներ՝ յուրաքանչյուր տվյալ տարում առավելագույն արդյունք ստանալու տարբերակը: Դրա հետ մեկտեղ շատ կարևոր է իմանալ, թե ինչպիսին կլինի սպառման ֆոնդը այդ բոլոր տարբերակների դեպքում: Ամենից ավելի փոքր այն պետք է լինի երկրորդ տարբերակի դեպքում, որը և պակաս լարված է ծախսումների մեծությամբ, իսկ ամենից ավելի մեծ՝ առաջին տարբերակի դեպքում:

Հասարակական արտադրության արդյունավետության կարևոր ցուցանիշ է ազգային եկամտում սպառման ֆոնդի հարաբերությունը կուտակման ֆոնդի նկատմամբ: Որքան ավելի մեծ է սպառման ծավալը կուտակման մեկ միավորի դիմաց, այնքան ավելի արդյունավետ է գործում հասարակական արտադրությունը: Սպառումը և կուտակումը համադրելու ժամանակ հնարավոր է լինում սպառման ծավալին ավելացնել անարտադրական կուտակումը, որի մեծագույն մասը կազմում են ներդրումները բնակելի շենքերի, կրթության,



առողջապահության, գիտության, արվեստի և մշակույթի հիմնարկների համար, այսինքն, ըստ էության, ներդրումները հասարակական սպառման մեջ:

Ֆոնդերի, ազգային եկամտի, սպառման և կուտակման հարաբերակցության վերջին տարիների ցուցանիշները արված են հետևյալ աղյուսակում.

| | 1960 թ. | 1965 թ. | 1970 թ. | 1972 թ. | 1973 թ. |
|---|---|---|---|---|---|
| Հիմնական արտադրական ֆոնդերի աճը մեկ տարում (մլրդ ռուբ.) | 15,7 | 17,5 | 32,1 | 34,7 | 37,1 |
| Նույնը տոկոսներով՝ օգտագործված ազգային եկամտի նկատմամբ | 11,0 | 9,2 | 11,3 | 11,1 | 11,1 |
| Արտադրական հիմնական ֆոնդերի և նյութական շրջանառու միջոցների ու ռեզերվների աճը (մլրդ ռուբ.) | 28,7 | 39,8 | 65,2 | 64,8 | 73,8 |
| Նույնը տոկոսներով՝ օգտագործված ազգային եկամտի նկատմամբ | 20,1 | 20,9 | 22,9 | 20,8 | 22,1 |
| Օգտագործված ազգային եկամուտը ռուբլիներով՝ կուտակման 1 ռուբլու դիմաց | 3,73 | 3,79 | 3,39 | 3,64 | 3,45 |
| Օգտագործված ազգային եկամուտը ռուբլիներով՝ արտադրական կուտակման 1 ռուբլու դիմաց | 4,98 | 4,79 | 4,38 | 4,79 | 4,53 |
| Սպառումը ռուբլիներով՝ կուտակման 1 ռուբլու դիմաց | 2,73 | 2,79 | 2,39 | 2,64 | 2,45 |
| Սպառումը պլյուս անարտադրական ֆոնդերի աճը ռուբլիներով՝ արտադրական կուտակման 1 ռուբլու դիմաց | 3,98 | 3,79 | 3,38 | 3,79 | 3,53 |

Ընդհանուր առմամբ աղյուսակում բերված թվերը վկայում են վերջին տարիների սպառման և կուտակման հարաբերության կայունության մասին: Արտադրական կուտակման բաժինը 1970—1973 թվականներին հիմնականում եղել է կայուն:

Տնտեսական արդյունավետության՝ վերը բերված ցուցանիշներից բացի երբեմն խորհուրդ է տրվում կիրառել աճային ցուցանիշներ՝ ազգային եկամտի աճի հարաբերությունը արտադրական ֆոնդերի աճի նկատմամբ կամ սպառման աճի հարաբերությունը կուտակման նկատմամբ, նկատի ունենալով, որ այս ցուցանիշները կարող են ավելի հստակորեն արտացոլել դինամիկայի անհատական առանձնահատկություններն ըստ տարիների: Սակայն հարկավոր է զգույշ վերաբերվել դրանց օգտագործմանը: Դրանք, ինչպես արդեն ցույց տրվեց, աչքի են ընկնում անհամեմատ ավելի մեծ տատանողականությամբ ժամանակի մեջ, քան տոտալ ցուցանիշները և պահանջում են առանձնահատուկ մանրակրկիտ ու խոր վերլուծություն, մասնավորապես, երբ սահմանվում է կապ ազգային եկամտի աճի և այդ աճը առաջացրած ծախսումների միջև:

Վերջում հարկավոր է ընդգծել հասարակական արտադրության դինամիկան որոշող գործոնների վերլուծության կարևորությունը, որոնց թվին են պատկանում ամենից առաջ բանվորական ուժը և հիմնական ու շրջանառու արտադրական ֆոնդերը: Այդ գործոններն ամենևին էլ ինքնուրույն չեն գործում, ինչպես պնդում է բուրժուական «երեք գործոնների տեսությունը»: Հայտնի է, որ արտադրական ֆոնդերն ինքնին արժեք չեն ստեղծում, բայց, լինելով անցյալի աշխատանքի ծախսումների արդյունք, աշխատողներին զինում են արտադրության միջոցներով, նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և դրանով իսկ արտադրանքի թողարկման ավելացմանը: Բանվորական ուժի և արտադրության միջոցների ծախսումների քանակական կախումը կարող է բնութագրվել հետևյալ արտահայտությամբ.

$$P=AL^{a}K^{1-a},$$

որտեղ P-ն արտադրանքն է, L-ն՝ բանվորական ուժը, K-ն՝ արտադրական ֆոնդերը, A-ն և a-ն՝ ֆունկցիաների պարամետրերը:

Այս արտահայտությունը ամենապարզ ձևով առաջարկել են Կոբը և Դուգլասը: Այն հետագայում կատարելագործել են մի շարք հետազոտողներ, այդ թվում և սովետական տնտեսագետներ Անչիշկինը, Վիշնևը, Պոչկինը, Շտեռնը և ուրիշներ, որոնք առաջարկել են որպես առանձնահատուկ գործակիցներ հաշվի առնել նաև այնպիսի գործոններ, ինչպիսիք են աշխատողների որակավորումը, արտադրության տեխնիկական մակարդակը: Դրան կարելի է ավելացնել և՛ արտադրության կառավարման սիստեմը, և՛ բնական ռեսուրսները, և՛, գուցե, մի քանի այլ գործոններ, որոնք կարող էին ազդել արտադրության ծավալների վրա: Դրանց վերլուծությունը մեծ նշանակություն ունի հասարակական արտադրության արդյունավետությունը հետազոտելու ժամանակ: Բանը ոչ միայն թվերի համադրումն ու դրանց դինամիկան է, այլև այն, թե մարդկանցից կախված կամ անկախ այս կամ այն պայմանը ինչպես է ազդում արտադրության զարգացման վրա: Չէ՞ որ այնպիսի գործոններ, ինչպիսիք են մարդկանց կուլտուրական մակարդակի և կրթության աճը, գիտության ու տեխնիկայի առաջընթացը, երկրի ապահովվածությունը բնական ռեսուրսներով ու դրանց մատչելիությունը, շատ կարևոր դեր են խաղում արտադրության զարգացման և հասարակության առաջադրած նպատակներին հասնելուն ուղղված հասարակական աշխատանքի ծախսումների արդյունավետության մեծացման գործում:

«Коммунист», 1975, № 7.

# ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Ս. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար

Ինչպես ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏԻ մյուս շրջաններում, Արտաշատում ևս գյուղատնտեսությունը մասնագիտանում է մի կողմից՝ խաղողի, բանջարա-բոստանային կուլտուրաների, մյուս կողմից՝ կաթի արտադրության ասպարեզում: Մեր տնտեսություններն զբաղվում են նաև հացահատիկային և կերային կուլտուրաների մշակությամբ, ունեն թռչնաբուծական, խոզաբուծական և ոչխարաբուծական ֆերմաներ: Գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը հասնում է ավելի քան 23 մլն ռուբլու: Կաթի ու մսի համախառն արտադրությամբ Արտաշատը հանրապետությունում գրավում է երրորդ տեղը: Շրջանի էկոնոմիկայում տեսակարար մեծ կշիռ ունի նաև արդյունաբերությունը, որի արտադրանքի ծավալը հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում կազմեց 73,3 մլն ռուբլի: Հնգամյակի ընթացիկ՝ եզրափակիչ տարում տնտեսությունները պետք է խաղողի համախառն արտադրությունը հասցնեն 32.800 տոննայի, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ 56.000, կաթինը՝ 13.500, մսինը՝ 2.350 տոննայի, ձվինը՝ 39,5 մլն հատի: Արդյունաբերական արտադրանքի ծավալը կկազմի 81 մլն ռուբլի:

Այսպիսով, էկոնոմիկայի համակողմանի զարգացումը շրջանի կուսկազմակերպության առջև ծառացած կարևոր խնդիրն է: Շրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները բազմակողմանի գործունեություն են ծավալում՝ էկոնոմիկայի վերելքն ապահովելու, ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները կատարելու և կուսակցության առաջիկա XXV համագումարն արտադրական նշանակալի նվաճումներով դիմավորելու համար: Կուսշրջկոմն ուսումնասիրում և պլենումների ու բյուրոների նիստերում պարբերաբար քննարկում է շրջանի էկոնոմիկայի զարգացմանը վերաբերող հանգուցային ու արմատական հարցեր, ընդհանրացնում ուսանելին ու լավը, բացահայտում թերությունները, միջոցներ ձեռնարկում դրանք վերացնելու համար:

ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ շրջանի գյուղատնտեսության հիմնական, առաջատար ճյուղն է: Հնգամյակի անցած տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների բոլոր առաջադրանքները կատարվել են, բացառությամբ խաղողի և պտուղների: Բնականաբար, շրջկոմն ամենից առաջ մտահոգված է այգեգործության զարգացմամբ և պարբերաբար անդրադառնում է այդ ճյուղի հետագա վերելքի խնդիրներին: Այսպես, 1974 թ. ապրիլի 25-ին շրջկոմի պլենումը համակողմանիորեն վերլուծեց այգեգործության զարգացման հարցը, վեր հանեց խաղողի արտադրության պլանային առաջադրանքների թերակատարման հիմնական պատճառները, նշեց դրանց վերացման ուղիները: Պլենումի որոշումից մեկ տարի անց, 1975 թ. հունվարի 16-ին, շրջկոմի բյուրոն կրկին անդրադարձավ այգեգործության հարցին, այս անգամ արդեն պլենումի որոշման կատարման ստուգման տեսանկյունով: Բյուրոն նշեց, որ կոլտնտեսությունների վարչությունները, սովխոզների դիրեկցիաները, սկզբ-

նական կուսկազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել խաղողի այգիների վերակառուցումն արագացնելու, մշակության մեքենայացման մակարդակը բարձրացնելու ասպարեզում: Դալարի, Մրգանուշի, Ն. Դվինի, Այգեստանի և այլ տնտեսություններ լիովին մեքենայացրել են խաղողի այգիների միջշարային և միջվազային տարածությունների մշակության, այգեթաղի, այգեբացի, բուժման և այլ աշխատանքներ:

Կուսշրջկոմի բյուրոն միաժամանակ արձանագրեց, որ շատ տնտեսություններում դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրվում խաղողի այգիների մշակությանը, խախտվում են ագրոտեխնիկական միջոցառումների ժամկետները, ցածր է այգեգործության վարման կուլտուրան: Այդ ամենի հետևանքով Վարդաշենի, Բուրաստանի, Մրգավանի, Բերքանուշի և այլ տնտեսություններում խաղողի այգիների բերքատվությունը 55 ցենտներից չի անցնում:

Շրջկոմը անհանդուրժելի համարեց, որ առանձին տնտեսություններում միանգամայն անբավարար է ընթանում խաղողի այգիների վերակառուցման գործը: Մրգավանի, Ն. Դվինի, Բերքանուշի, Արևշատի կոլտնտեսությունները, Ոստանի, Մռավյանի անվան և Արտաշատի սովխոզները, քանդելով հին, թմբային այգիները, չեն հոգացել նոր այգետնկումների առաջադրանքների կատարման մասին, որի պատճառով խաղողի այգիների ընդհանուր տարածությունը շրջանում զգալիորեն նվազել է: Հասկանալի է, որ այդ ամենը չէր կարող բացասաբար չանդրադառնալ խաղողի արտադրության հնգամյակի առաջադրանքների կատարման վրա:

Հաշվի առնելով այգեգործության զարգացման գործում տեղ գտած թերությունները՝ կուսշրջկոմը մշակեց այգետնկումներն արագացնելու և այգիների նոր տարածությունները հնգամյակի վերջին երկու տարում լրացնելու միջոցառումներ: 1974 թ. հիմնվեց 370, 1975 թ. գարնանը՝ 230 հեկտար խաղողի նոր այգի: Ընթացիկ տարվա աշնանը կհիմնվի ևս 250 հեկտար: Այդ նպատակով տնտեսությունները դեռևս տարեսկզբին մթերել են անհրաժեշտ քանակությամբ կտրոններ և ստեղծել են իրենց տնկարանը՝ բարձրորակ, զտասորտ տնկանյութ ստանալու համար:

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ առաջընթացի արդի փուլում կուսակցությունը լուրջ խնդիրներ է դնում նաև գյուղատնտեսության աշխատողների, գյուղական կուսկազմակերպությունների առջև, պահանջում է գիտականորեն վարել այդ բնագավառի գործերը, բարձրացնել դրա արդյունավետությունը: Կուսշրջկոմը ձգտում է բարելավել գյուղատնտեսության ղեկավարումը, այն բարձրացնել կուսակցության նոր պահանջների մակարդակին, կիրառել նոր ձևեր ու մեթոդներ, գիտականորեն վարել էկոնոմիկայի այդ ճյուղը: Շրջանի կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրությունը կարգավորելու, կոլտնտեսականների նյութական շահագրգռությունը բարձրացնելու նպատակով, շրջկոմի բյուրոն 1974 թ. ապրիլի 3-ին որոշում ընդունեց դրամական վարձատրության անցնելու վերաբերյալ: Մեկ ամսվա ընթացքում գումարվեցին կոլտնտեսականների ընդհանուր ժողովներ, ընդունվեց և հաստատվեց նախօրոք մշակված աշխատանքի դրամական վարձատրության կանոնադրությունը, հաստատվեցին գիտականորեն մշակված արտադրական նորմաներ, վերջ տրվեց վարչական անձնակազմի վարձատրության գործում տեղ գտած լուրջ թերություններին:

Շրջկոմի բյուրոն, քննարկելով կոլտնտեսությունների 1973 թ. ֆինանսատնտեսական տարվա արդյունքները, կարևորեց հիմնական ֆոնդերի ընդլայնման ու ամրապնդման խիստ անհրաժեշտությունը և պահանջեց բոլոր կոլտնտեսություններից՝ ավելի շատ միջոցներ հատկացնել կուտակման ֆոնդին, ապահովել սպառման ու կուտակման ֆոնդերի ճիշտ համամասնությունը: Արդյունքը եղավ այն, որ 1974 թ. եկամուտներից կատարվող հատկացումները հասցվեցին 12 տոկոսի, նախորդ տարվա 8 տոկոսի փոխարեն (առանց ամորտիզացիոն հատկացումների):

Շրջանի էկոնոմիկայում նկատելի տեսակարար կշիռ ունեն արդյունաբերական ձեռնարկությունները, և մենք մեր տեսադաշտում ենք պահում դրանց գործունեությունը: Վերջին մեկ-երկու տարում կուսշրջկոմի բյուրոյի նիստե-



րում քննարկել ենք Արտաշատի պահածոների գործարանում, գինու կոմբինատում, մանվածքային-տրիկոտաժի ֆաբրիկայում արտադրանքի որակի բարձրացման, պարկետի ու կահույքի ֆաբրիկաներում աշխատանքային կարգապահության ամրապնդման, սոցիալիստական սեփականության պահպանման հարցերը: Դա մեծ չափով նպաստել է այդ ձեռնարկությունների տնտեսական ցուցանիշների բարելավմանը. շրջանը 1974 թ. երեք եռամսյակ անընդմեջ և 1975 թ. առաջին կիսամյակում հաղթող ճանաչվեց հանրապետական սոցիալիստական մրցության մեջ, արժանացավ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին ու դրամական առաջին կարգի մրցանակին:

ԲԱՑԻ ՊԼԵՆՈՒՄՆԵՐՈՒՄ, ակտիվի ժողովներում և բյուրոյի նիստերում էկոնոմիկային վերաբերող հարցերի քննարկումից, կուսշրջկոմն իրականացնում է դրա վերելքին նպաստող նաև այլ միջոցառումներ: Տնտեսությունների ղեկավարների և մասնագետների համար մենք պարբերաբար կազմակերպում ենք արտադրական խորհրդակցություններ, գիտապրակտիկ կոնֆերանսներ ու սեմինարներ և այլն: Կոլտնտեսությունների վարչությունների նախագահների, սովխոզների դիրեկտորների և մասնագետների մասնակցությամբ քննարկում ենք գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների հարցը, որոշում հաջորդ ամսվա կամ աշխատանքային փուլի անելիքները: Շինարարական և պատվիրատու կազմակերպությունների ղեկավարների մասնակցությամբ ամփոփում ենք շինարարության ընթացքը, վեր հանում աշխատանքի թերությունները և անհրաժեշտ օգնություն ցույց տալիս շինարարներին: Տարեկան երեք անգամ կազմակերպում ենք կոլտնտեսությունների նախագահների, սովխոզների դիրեկտորների և գյուղատնտեսների սեմինար պարապմունք՝ նվիրված այգեգործության հարցերին: Սեմինարն անցկացվում է շրջանի այգեգործական տնտեսություններում, գործնականորեն ցույց են տրվում խաղողի այգիների մշակության ագրոտեխնիկական, մեքենայացման եղանակները: Պարբերաբար հրավիրում ենք նաև գյուղատնտեսների սեմինար խորհրդակցություն, որտեղ նրանց պարզաբանվում են մասնագիտական և տնտեսագիտական զանազան հարցեր:

Հանրային արտադրության բարձրացման, էկոնոմիկայի ամրապնդման գործում վճռական դեր ունեն առաջավոր փորձի պրոպագանդումն ու արմատավորումը: Կուսշրջկոմը կազմակերպում է արտադրության առաջավորների աշխատանքի փորձի ուսումնասիրություն և նպաստում շրջանի տնտեսություններում դրա ներդրմանը: Այսպես, ուսումնասիրել ենք Դալարի ու Մրգանուշի կոլտնտեսությունների այգեգործների, Վ. Արտաշատի, Ն. Ջրաշենի կոլտնտեսություններում՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ինտենսիվ բտման, Դալարի կոլտնտեսությունում՝ որակի համար պայքարի, Այգեզարդի կոլտնտեսությունում՝ գիտակցական կարգապահության ամրապնդման փորձը: Այնուհետև արդյունքները քննարկել ենք շրջկոմի բյուրոյում և հանձնարարել տնտեսությունների ղեկավարներին ու կուսկազմակերպություններին՝ լայնորեն արմատավորել աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակները:

Կուսշրջկոմը էկոնոմիկայի ամրապնդման լավ միջոց է համարում տնտեսությունների ու ձեռնարկությունների հաշվետվությունների քննարկումը: Դա զգաստացնում է մարդկանց, բարձրացնում նրանց պատասխանատվությունն իրենց վստահված տեղամասերի գործերի վիճակի համար: 1974—1975 թթ. շրջկոմի բյուրոյում լսել ենք Կանաչուտի, Գետազատի, Բերքանուշի, Աբովյանի, Վարդաշենի կոլտնտեսությունների վարչությունների, պահածոների գործարանի և պարկետի ֆաբրիկայի դիրեկցիաների հաշվետվությունը՝ իրենց տնտեսական գործունեության վերաբերյալ: Վեր հանելով աշխատանքում տեղ գտած թերությունները՝ բյուրոն միաժամանակ անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս նրանց՝ գործերի վիճակը բարելավելու համար:

Շրջկոմը առանձնակի հոգածություն է ցուցաբերում ետ մնացող տնտեսությունների նկատմամբ: Այսպես, օրինակ, քննարկելով Բուրաստանի կոլ-

Մեր շրջանի կուսկազմակերպությունը պատիվ չի բերում, որ հնգամյակի անցած չորս տարում, պետական պլանի համեմատությամբ, պակաս է արտադրվել 31 հազար տոննա խաղող, 2.500 տոննա պտուղ։

Նկատելի թերություններ կան անասնապահության բնագավառում։ Շատ տնտեսություններում դեռևս ցածր է անասունների մթերատվությունը։ Շահումյանի, Վ. Դվինի, Կանաչուտի, Արևշատի և այլ կոլտնտեսություններում կովերի տարեկան միջին կաթնատվությունը 300—400 կիլոգրամով պակաս է շրջանի միջինից։

Պլենումը լուրջ թերություններ արձանագրեց նաև արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքում։ Դրանցից մի քանիսը չեն կատարել հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները։

Կուսշրջկոմի պլենումը ՀԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների առնչությամբ բացահայտեց նաև շրջանի ժողովրդական տնտեսության մյուս բնագավառների, ինչպես նաև էկոնոմիկայի հարցերով զբաղվող կադրերի ընտրության և դաստիարակության գործում տեղ գտած թերությունները և ընդունեց համապատասխան որոշում՝ դրանք վերացնելու, էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական ղեկավարությունն ուժեղացնելու համար։

ՀԱՅՏՆԻ Է, ՈՐ ՏՆՏԵՍԱԿԱՆ հաջողությունը հիմնականում պայմանավորված է կուսկազմակերպությունների ծավալած կազմակերպական-քաղաքական աշխատանքի բարձր մակարդակով։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումները անհանդուրժելի համարեցին, որ հողակլիմայական միևնույն պայմաններում բարձր արդյունքներ ապահովող տնտեսությունների կողքին դեռևս կան խիստ ցածր արդյունքներ ստացող տնտեսություններ։ Դա բացատրվում է կուսկազմակերպությունների անբավարար գործունեությամբ, կազմակերպական-քաղաքական թույլ աշխատանքով։ Նման օրինակներ կան նաև մեր շրջանում։ Այսպես. Դալարի և Մրգավանի կոլտնտեսությունները հարևաններ են, ունեն հողային նույնանման պայմաններ։ Գյուղատնտեսական պիտանի հողերը Դալարում կազմում են 446, Մրգավանում՝ 536 հեկտար, երկուսն էլ ունեն 275 աշխատունակ կոլտնտեսական։ Մինչդեռ նրանց տնտեսական արդյունքները խիստ տարբեր են։ Դալարի կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի արժեքը 1974 թ. կազմել է 610 հազար, Մրգավանում՝ 273 հազար ռուբլի։ Դալարցիները 1966 թ. սկսել ու գրեթե ավարտում են հին թմբային խաղողի այգիների վերակառուցումը և ընդհանուր տարածությունը չեն պակասեցրել, իսկ մրգավանցիները, ընդհակառակը՝ վերակառուցել են այգիների կեսից էլ պակաս մասը, ընդհանուր տարածությունը նվազեցնելով 33 հեկտարով։ Եվ ահա արդյունքը. Դալարի կոլտնտեսությունը խաղողի արտադրության ու վաճառքի հնգամյակի անցած չորս տարիների առաջադրանքը կատարել է 103,6, Մրգավանինը՝ 51 տոկոսով կամ համապատասխանաբար հեկտարից ստացել են 107 և 51,7 ցենտներ միջին բերք։ Նույնանման հարաբերություն գոյություն ունի նաև արտադրության մյուս ճյուղերի արդյունքներում։

Եղրակացությունը մեկն է. Դալարի կոլտնտեսության վարչությունը (նախագահ՝ Տ. Հուսիկյան) և կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ֆ. Ասատրյան) ծավալել են արդյունավետ գործունեություն՝ ճիշտ զուգակցելով կազմակերպական ու քաղաքական աշխատանքը տնտեսական խնդիրների հետ, մոբիլիզացրել էկոնոմիկայի զարգացման բոլոր հնարավորություններն ու ռեզերվները։ Հակառակ պատկեր է Մրգավանի կոլտնտեսությունում, որտեղ վերջին հինգ տարում փոխվել է վարչության երեք նախագահ, կուսկազմակերպության երկու քարտուղար։ Այստեղ չի ամրապնդվել բրիգադավարների և ֆերմաների վարիչների կազմը, կուսկազմակերպությունը վատ է զբաղվել արտադրության կազմակերպման, ղեկավար աշխատողների ու մասնագետների պատասխանատվության բարձրացման և աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերով, կազմակերպական-քաղաքական աշխատանքը չի բարձրացրել արդի պահանջների մակարդակին։



Կուսշրջկոմը միջոցներ է ձեռնարկել Մրգավանի կոլտնտեսության ղեկավար կադրերի կազմը բարելավելու, նրանց պատասխանատվությունը բարձրացնելու, էկոնոմիկան ներկա վիճակից հանելու համար։

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ և բուռն զարգացումը հնարավոր է ապահովել տևական աշխատանքով, ընթացիկ և հեռանկարային խնդիրների ճիշտ զուգակցմամբ։ Առաջիկա տասներորդ հնգամյակը մեր շրջանի համար կլինի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աննախադեպ առաջընթացի արգասավոր ժամանակաշրջան։ Կուսշրջկոմն իր պլենումներում և բյուրոների նիստերում, ինչպես և սկզբնական կուսկազմակերպությունները ժողովներում արծարծում են շրջանի էկոնոմիկայի զարգացման հեռանկարային հարցերը։ Տասներորդ հնգամյակում Արտաշատ քաղաքում կընդլայնվի պահածոների գործարանը, կվերակառուցվի և տեխնիկապես կվերասարքավորվի գինու կոմբինատը, երեք անգամ կմեծանա փորձնական-գործիքաշինական գործարանի արտադրանքի ծավալը, եկող տարի լրիվ շահագործման կհանձնվի խեցեղեն իրերի գործարանը՝ 2,5 մլն ռուբլու արտադրական կարողությամբ։

Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ բարձրացրել են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման, կենտրոնացման, նոր հողերի յուրացման և այլ հարցեր։ Կուսշրջկոմը, ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի համապատասխան որոշման համաձայն, գործնականում զբաղվում է արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման, շրջանում միջկոլտնտեսային կապերի ընդլայնման հարցերով։ Ընդ որում, մենք ղեկավարվում ենք ՍՄԿԿ XXIV համագումարի այն պահանջով, որ «Մասնագիտացման խորացումը և արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելը, ամեն մի կոնկրետ դեպքում, պետք է լինի տնտեսապես հիմնավորված, համակողմանի նախապատրաստված» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 36)։ Նախատեսել ենք շրջանում ստեղծել միջկոլտնտեսային և պետական կոլտնտեսային հինգ կազմակերպություն, միջկոլտնտեսային ջերմոցային տնտեսություն, երինջների աճեցման, շինարարական, մեղվաբուծական և կաթի արտադրության պետական-կոլտնտեսային ձեռնարկություններ։ Կոլտնտեսություններում հրավիրվել են կոլտնտեսականների ընդհանուր ժողովներ, որտեղ որոշվել են նրանց մասնակցության ձևերն այդ ձեռնարկությունների գործունեությանը։ Լիազոր-ներկայացուցիչների շրջանային ժողովն ընտրել է միջկոլտնտեսային ջերմատան և երինջների աճեցման պետական-կոլտնտեսային ձեռնարկության խորհուրդների կազմը, հաստատել նրանց ղեկավարությունը։ Մյուս ձեռնարկությունների ստեղծման հարցը կլուծվի նախատեսված ժամկետներում՝ 1976—1978 թվականներին։ Մենք բնավ չենք տարակուսում, որ միջկոլտնտեսային և պետական կոոպերատիվ միավորումներում առավել արդյունավետ կօգտագործվեն տեխնիկան, կապիտալ ներդրումներն ու աշխատանքային ռեսուրսները, գյուղատնտեսական արտադրության մեջ ավելի լայնորեն կկիրառվեն ինդուստրիալ մեթոդները։

Հաշվի առնելով կուսկազմակերպությունների պահանջը՝ կուսշրջկոմն ուսումնասիրել և գյուղատնտեսության հետագա զարգացման մի շարք կարևորագույն պրոբլեմների վերաբերյալ ընդունել է համապատասխան որոշում։ Այսպես. կոլտնտեսություններում կերի բազայի ընդլայնման նպատակով հանրապետության ղեկավար մարմինների առջև հարց ենք հարուցել՝ յուրացնելու Ադաեր կոչվող հանդամասի աղակալած հողերը։ Արդեն կազմվել է հողերի հարթեցման ու ոռոգման ցանցի կառուցման նախագիծը։ Առաջին հնգամյակում այն կիրագործվի, և շրջանի կոլտնտեսությունները լրացուցիչ կստանան մոտ 400 հեկտար վարելահող։

Նախատեսել ենք Քաղցրաշենի և Ազատի ջրհան կայանների ոռոգման ցանցի տակ դրվող մոտ 2.000 հեկտար նոր հողերի յուրացման և բազմամյա տնկումների կոնկրետ առաջադրանքներ։ Տասներորդ հնգամյակում շրջանում խաղողի այգիների տարածությունը կավելանա ավելի քան 1.000 հեկտարով։

Գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը մեքենայացնելու, աշ-

խատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով շրջկոմը նախատեսել է առաջիկայում մասնագիտացնել տնտեսությունները և դրանցում կենտրոնացնել գյուղատնտեսական առանձին կուլտուրաների ցանքատարածությունը: Դրանով վերջ կտանք այն սխալ պրակտիկային, երբ շատ կոլտնտեսություններ առանձին կուլտուրաների ցանքը կատարում են 1—2 հեկտարի վրա:

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրության հետ նախատեսել ենք Գյոլասար կոչվող ամառային արոտավայրում կազմակերպել պետական կոլտնտեսային ձեռնարկություն՝ և այնտեղ կենտրոնացնել տնտեսությունների ոչխարի հոտը: Ոչխարաբուծության արդյունավետությունը բարձրացնելուց բացի, դա կնպաստի հողերի ռացիոնալ օգտագործմանը, խոտհարքների ու արոտավայրերի, կերային կուլտուրաների ցանքային տարածությունների բարելավմանը, ընդարձակմանը:

Հեռանկարային կարևոր պրոբլեմներից մեկը, որին շրջկոմը հատուկ ուշադրություն է նվիրում, շրջանում եղած երկու հազար հեկտարից ավելի աղակալած գերխոնավ հողերի բարելավումն է գյուղատնտեսական կուլտուրաների ցանքի համար օգտագործումը: Այս հարցի կարևորությունը, ինչպես հայտնի է շեշտեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը:

Շրջկոմի բյուրոն մշակել է անասնապահության զարգացման և աշխատատար պրոցեսների մեքենայացման միջոցառումներ: Հատկապես մեծ ուշադրություն ենք նվիրելու կերի մշակմանը, կերարտադրամասերի կառուցմանը: Նախատեսել ենք նաև առաջիկա տարիներին հանրային հոտում զգալիորեն ավելացնել կովերի տեսակարար կշիռը:

Գյուղատնտեսության զարգացման հեռանկարային խնդիրների լուծմամբ հնարավոր կլինի տասներորդ հնգամյակի վերջում՝ 1980 թ., շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում խաղողի համախառն արտադրանքը հասցնել 42 հազար տոննայի, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 58 հազար, կաթինը՝ 15 հազար, մսինը՝ 2.800 տոննայի, ձվինը՝ 50 մլն հատի: Այդ նշանակում է, որ ամեն մի հեկտարից կստացվի 120 ցենտներ խաղողի, 350 ցենտներ բանջարեղենի բերք, ամեն մի կովից՝ 2.500 կգ կաթ: Այս ցուցանիշներն զգալիորեն կգերազանցեն այժմյան մակարդակը:

ԱՐՏԱՇԱՏԻ ՇՐՋԱՆԻ կուսկազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները խոր գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»: Այդ փաստաթուղթը մեր հանրապետության տնտեսական ու կուլտուրական բարգավաճման նկատմամբ կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի, սովետական կառավարության ջերմ հոգատարության մի նոր, վառ դրսևորումն է: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հուլիսյան (1975) պլենումն ըստ պատշաճի արժեքավորեց այդ որոշման կարևորությունը հանրապետության համակողմանի առաջընթացի գործում, նախանշեց նոր, վիթխարի խնդիրների կենսագործման ասպարեզում կուսկազմակերպությունների հիմնական անելիքները: Մենք խորապես համոզված ենք, որ կուսակցության և կառավարության լրացուցիչ հատկացումները կնպաստեն նաև մեր շրջանի հեռանկարային պրոբլեմների ու խնդիրների լուծմանը, կխթանեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերելքը: Ահա թե ինչու սկզբնական կուսկազմակերպություններում, կոլեկտիվների ժողովներում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների քննարկումը խանդավառությամբ համակեց կոմունիստներին, բոլոր աշխատավորներին:

Շրջանի աշխատավորներն ամենուրեք որոշել են այդ հոգատարությանը պատասխանել անձնվեր գործերով, հետևողականորեն կենսագործել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները, լավագույն աշխատանքով, արտադրական աննախընթաց նվաճումներով դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը:

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

**Վ. Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ մարքսիստական սոցիոլոգիայի առանցքային պրոբլեմներից մեկն է: Այն անմիջականորեն առնչվում է սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրների գիտական լուծման, ժողովրդական տնտեսության զարգացման պլանների մշակման ու իրագործման, հասարակական պրոցեսների և դրանց հետագա ընթացքի պրոգնոզավորման հետ:

Սոցիալական պլանավորման կատեգորիան օգտագործվում է երկու առումով: Նեղ իմաստով դա նշանակում է քաղաքական, հոգևոր և սոցիալական այն հարաբերությունների ու երևույթների զարգացման կարգավորում, որոնք բխում են տնտեսական պրոցեսներից, հարաբերականորեն ինքնուրույն են և փոխազդում են տնտեսական զարգացմանը, ինչպես նաև սոցիալական կառավարման պլանավորում: Իսկ լայն իմաստով այն ընդգրկում է նաև տնտեսական զարգացման ցուցանիշների պլանավորումը:

Սոցիալական պլանավորումը գիտության համեմատաբար նոր պրոբլեմներից է: Այդ պատճառով գրականության մեջ գոյություն ունեն դրա տարբեր սահմանումներ: Ոմանք այն դիտում են որպես ժողովրդական տնտեսության պլանավորման բաղադրամաս, որն ընդգրկում է հասարակության զարգացումը, նրա սոցիալական և սոցիալ-տնտեսական հարաբերություններն արտացոլող պրոցեսները[1]: Ժ. Տ. Տոշչենկոն գտնում է, որ սոցիալական պլանավորումը հասարակական պրոցեսների զարգացման նպատակների, ցուցանիշների, խնդիրների (ժամկետների, տեմպերի, արագությունների) և դրանց կենսագործման հիմնական միջոցների հիմնավորված սահմանումն ու մշակումն է՝ բանվոր դասակարգի, սոցիալիստական հասարակության աշխատավորների շահերին համապատասխան[2]: Մյուսները սոցիալական պլանավորումը համարում են օբյեկտիվ օրինաչափությունների պլանաչափ օգտագործման պրոցես՝ սոցիալական կյանքի տարբեր կողմերի առաջընթացը կարգավորելու նպատակով[3]: Որոշ հեղինակներ էլ պլանավորումը, ներառյալ և սոցիալականը, դիտում են որպես առաջադրանք կազմելու, պլաններ մշակելու, ստուգելու և ճշգրտելու պրոցես, նպատակների ու միջոցների փոխհարաբերությունների սիստեմ[4]:

Սոցիալական պլանավորումը հասարակական գործողություններ ընդունելու ձևերից է՝ ուղղված սոցիալական պրոբլեմների լուծմանն ու հաղթահարմանը,— գրում է Ֆ. Մերիլը[5]: Քանի որ մարդկանց վարքը միշտ չէ, որ համապատասխանում է հասարակական արժեքներին, ապա՝ ազատությունը, ըստ նրա, հնարավոր է ապահովել մարդկանց սոցիալական գործողությունները վերահսկելով և պլանավորելով... ինչպես և՝ պաշտոնապես, պետության միջոցով:

Սահմանումներն այնքան բազմազան են, որովհետև սոցիալական պլանավորման՝ որպես հասարակական պրոցեսների կառավարման կարևորագույն

տարրի, պրոբլեմը թերի է ուսումնասիրված: Ընդհանրական վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանցից յուրաքանչյուրը նշում է սոցիալական պլանավորման այս կամ այն (բայց ոչ լրիվ) հատկանիշը:

Սոցիալական պլանավորումը պատմական անհրաժեշտություն է՝ պայմանավորված հասարակական արտադրաուժերի և արտադրահարաբերությունների արդի մակարդակով: Դրա սաղմերն առկա են դեռևս զարգացած կապիտալիզմի պայմաններում, սակայն նեղ, ոչ բացարձակ նշանակությամբ:

Հաշվի առնելով սոցիալիստական պլանավորման առավելությունները, փորձը, կապիտալի աշխարհում այսօր սոցիալական պլանավորման փորձեր են անում ո՛չ միայն ձեռնարկության կամ ճյուղային տնտեսության ներսում, այլև առանձին մոնոպոլիաների շրջանակներից դուրս: Սակայն պետական-մոնոպոլիստական ծրագրերն ու պլանները չեն ընդգրկում վերարտադրության ողջ պրոցեսը: Սոցիալական պլանավորման մասշտաբները մնում են համեմատաբար նեղ, վերարտադրության որոշակի սեկտորի կամ բնագավառի շրջանակներում: Եթե պլանավորումը կատարվում է նույնիսկ հասարակական մասշտաբներով, ապա մասնավոր սեփականատիրական հարաբերությունների պատճառով պլանները կորցնում են իրենց դիրեկտիվությունը: Օրինակ, պլանավորումը Ֆրանսիայում բացահայտորեն հանձնարարական բնույթ է կրում, տնտեսական լրացուցիչ լծակների կարիք է զգում, որպեսզի խոշոր ձեռնարկատերերին հարկադրի՝ ընդունելու այդ հանձնարարականները: «Բուրժուական հասարակության ամբողջ աղը հենց այն է,— ընդգծել են մարքսիզմի հիմնադիրները,— որ նրա մեջ a priori գոյություն չունի արտադրության ոչ մի գիտակցական հասարակական կարգավորում»[6]: Ընդսմին, նրանք նկատի են ունեցել կարգավորումը ո՛չ թե առանձին ձեռնարկության մեջ կամ տնտեսության ճյուղերում, այլ ողջ հասարակության մասշտաբով: Բացահայտելով սոցիալ-պատմական զարգացման հեռանկարները, նրանք հայտնագործեցին սոցիալիզմի պայմաններում հասարակական արտադրության պլանաչափ-համամասնական զարգացման օրենքը:

ԳԻՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՏԵՍԱԿԱՆ ՀԻՄՔԵՐԻ հետագա զարգացումն ու խորացումը կապված են Վ. Ի. Լենինի անվան հետ: Ընդգծելով սոցիալական պլանավորման կարևոր նշանակությունը, նա 1923 թ. գրել է. «...մենք այժմ արմատական սոցիալական փոփոխություններ կատարելու համար անհրաժեշտ ժամկետներ սահմանելու՝ պատմության մեջ բավականին հաջվադեպ առիթ ենք ստացել, և մենք այժմ պարզ տեսնում ենք, թե ի՛նչ կարելի է անել հինգ տարվա մեջ և ի՛նչ բանի համար հարկավոր են ավելի մեծ ժամկետներ»[7]: Սոցիալական պլանավորումը պայմանավորված է սոցիալիստական հասարակության բարդ, դինամիկ, ինքնակառավարվող բնույթով, որտեղ շուկայական անարխիան և մրցակցությունը փոխարինվում են գիտական, պլանաչափորեն կազմակերպված կառավարմամբ: Սոցիալիզմի ծագման հետ սկսվում է մարդկության իսկական պատմությունը, երբ իրականացվում է հասարակական կյանքի բոլոր կողմերի նպատակասլաց և կոմպլեքսային կառավարումը: Այսպիսով, սոցիալիզմի հաստատումով հասարակական կենսագործունեության առանձին բնագավառների կարգավորումից անցում է կատարվում դեպի ողջ հասարակության տնտեսական, քաղաքական, հոգևոր և այլ պրոցեսների գիտական կառավարումը: Այս հասարակարգում կազմավորվում և զարգանում է կառավարման գիտությունը, որն ուսումնասիրում է հասարակական հարաբերությունների կարգավորման մեխանիզմներն ու մեթոդները՝ սոցիալական պրոցեսների զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների գիտակցված պահանջների համաձայն: Այսօր կառավարման գիտությանը զուգընթաց զարգանում է սոցիալական պլանավորման տեսությունը, որը գիտություն դառնալու միտում ունի: ՍՍՀՄ պետպլանի 1965 թ. մարտի 19-ի նիստում Ա. Ն. Կոսիգինը նշել է. «Պլանավորումը մի գիտություն է, որը պետք է տոգորվի գիտության և տեխնիկայի բոլոր նվաճումներով և առաջադեմ գաղափարներով»[8]: Եթե հաշվի առնենք, որ սոցիալական պլանավորումը պլանավորման մասնավոր



եղանակ (տեսակ) է, ապա՝ այս միտքը (իհարկե, առայժմ ոչ ամբողջովին) վերաբերում է նաև սոցիալական պլանավորմանը:

Մեր պատկերացմամբ, սոցիալական պլանավորումը հասարակական հարաբերությունների, պրոցեսների զարգացման օրենքների, հասարակական պրակտիկայի և կանխատեսման հիման վրա ձեռք բերված գիտական գիտելիքների կիրառման պրոցես է՝ ուղղված սոցիալական իրականության պլանաչափ վերափոխմանը*: Այն արտացոլում է ապագայի շարժման մեխանիզմներն ու շարժիչ ուժերը, սոցիալական նպատակների (խնդիրների, վճիռների) իրականացման ցուցանիշների և դրանց փոխազդող սոցիալական բոլոր գործոնների ամբողջությունը:

Սահմանման համար հիմք է ծառայել պլանավորման պրոցեսի դիալեկտիկան: Այն սկսվում է հասարակական երևույթների զարգացման ընթացքի մասին որոշակի սկզբնական պատկերացումներից և ենթադրություններից: Այնուհետև, ելնելով մարդկանց կենսափորձից և գիտելիքներից, կանխատեսվում են զարգացման հեռանկարները, մշակվում դասակարգի քաղաքական տակտիկան և ստրատեգիան (կուսակցության ծրագիրը): Ապա մշակվում է պլանավորման գիտական հիմքը, որը տեսության ձև է ընդունում: Հենց պլանավորման տեսական հիմքը, իրադրության վերլուծության արդյունքները և կանխատեսումը հող են ստեղծում՝ կառուցելու պլանային նպատակների և դրանց հասնելու միջոցների սիստեմը, որից ընտրվում են ամենաարդյունավետ տարբերակները:

Որպես պլանավորման անմիջական գործողություն, հանդես է գալիս պլանի իրացման նպատակով վճիռներ կայացնելը (միջոցառումների մշակում):

Պլանավորումն իր գործառնությունը շարունակում է նաև այդ միջոցառումներն իրականացնելիս: Սոցիալական պրոցեսների կառավարման բոլոր փուլերում այն իր կարևորությունը չի կորցնում և մնում է որպես կազմակերպչական ու ճանաչողական (մինչև իսկ կառավարչական) էական կողմ, անվերջ պրոցես՝ զարգացման նոր, ավելի բարձր աստիճանով և խոր բովանդակությամբ: Հավանաբար այս կարևոր հանգամանքն է անտեսվում մեր գրականության մեջ, երբ սոցիալական պլանավորումը հաճախ նույնացվում է սոցիալական զարգացման (ձեռնարկության, շրջանի, ճյուղային արդյունաբերության և այլն) պլանի հետ:

Սոցիալական պլանավորման հիմնական խնդիրը մարդկանց սուբյեկտիվ գործողությունները հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների պահանջներին համակերպելն է, իսկ նպատակը՝ արտադրության զարգացումը հասարակության նպատակին ենթարկելը՝ արտադրության տարերային զարգացումը գիտական կառավարմամբ փոխարինելու միջոցով: Հասկանալի է, որ դրան սոցիալիզմը միանգամից չի հասնում, դա երկարատև պրոցես է, քանի որ սոցիալիզմի զարգացման առաջին փուլում տարերայնությունը լրիվին չի հաղթահարվում:

Սոցիալական պլանավորումը, անկասկած, հասարակական պրոցեսների զարգացման կառավարումը մշտապես կատարելագործելու միջոց է, քանի որ նպատակասլացությունն ու պլանայնությունը սոցիալիստական հասարակության կառավարման անմիջական հատկանիշներն են: Չմոռանանք նշել նաև, որ պլանավորումը կառավարման պրոցեսների գումարից դուրս կամ կառավարմանը նախորդող երևույթ չէ: Սոցիալական պլանավորումը գիտական կառավարման ելակետ է: «Դա (պլանավորումը— Վ. Մ.),— նշում է Ա. Ն. Կոսիգինը,— սոցիալական պրոբլեմների մշակումն է, այնպիսի պրոբլեմների, որոնք կապված են ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հետ: Մենք պլանը դիտում ենք որպես տնտեսական և սոցիալական խնդիրների կոմպլեքս, որը պետք է լուծել պլանային ժամկետում...»[9]:

Սոցիալական պրոբլեմների առաջադրումը, մշակումը և լուծումը կապված

* Այս սահմանումը, որը նախորդ սահմանումների ընդհանրացումն է, չի հավակնում լինելու վերջնական և սպառիչ: Դրա կատարելությունը կախված է պլանավորման մեթոդների, ձևերի ու պրոցեսների հետագա կատարելագործումից:

են հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների գիտական ճանաչման, յուրացման և ակտիվ օգտագործման հետ։ Այս իմաստով սոցիալական երևույթների ճանաչողությունը, հիմնվելով անցյալի և ներկայի գիտական իմացության, հասարակական պրակտիկայի վրա, ուրվագծում է նաև հեռանկարները, շնորհիվ այն բանի, որ ճանաչողության ակտիվ, կանխատեսող կողմը զարգանում և հասնում է գիտական աստիճանի։ Այս պատճառով սոցիալական պլանավորման, որպես գիտության, իմացաբանական նախադրյալը գիտական կանխատեսումն է և, հատկապես, նրա մասնավոր եղանակը՝ սոցիալական պրոգնոզավորումը, պրոգնոստիկան։

**ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՕԲՅԵԿՏԸ ԱՆՑՅԱԼԻ ԵՎ ՆԵՐԿԱՅԻ** գիտական ըմբռնման հիման վրա կառուցվող հասարակության ապագան է։ Հասարակության զարգացման հիմնական խնդիրները, դրանց լուծման գլխավոր ուղիներն ու միջոցներն արտացոլվում են պլաններում։ Գիտականորեն պլանավորել՝ նշանակում է ճիշտ քաղաքականություն վարել՝ հաշվի առնելով զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, հնարավորությունները, սոցիալական ուժերի հարաբերակցությունը, միջազգային դրությունը և այլ հանգամանքներ։ Այս առումով պետք է տարբերել հասարակական օրենքների ճանաչման երկու կողմ։ Մի բան է պարզապես ճանաչել այդ օրենքները, դրանց գործառնության մեխանիզմները, հնարավոր զարգացումն ու դրա տենդենցները, յուրացնել դրանք, այլ բան՝ այդ օրենքները գիտակցելը, ակտիվորեն ճանաչելը։ Գիտենալը էապես տարբերվում է գիտակցելուց։ Սոցիալական զարգացման օրենքները աստիճանաբար ճանաչվել են հասարակության զարգացման բոլոր փուլերում։ Սակայն այդ օրենքների գիտակցումը, ակտիվ յուրացումը, սուբյեկտիվ գործոնի հակազդեցությունը դրանց վրա հնարավոր են դառնում այն ժամանակ, երբ, ինչպես նշում է Ֆ. Էնգելսը, անհրաժեշտության թագավորությունից մարդիկ թռիչք են կատարում դեպի ազատության թագավորություն։ Այդ թռիչքը Ֆ. Էնգելսը համարել է պրոլետարիատի պատմական խնդիրը, որն առաջադրվում և լուծվում է պատմական անհրաժեշտությամբ, սոցիալիստական հեղափոխության միջոցով։

Գիտատեխնիկական արդի հեղաշրջման տեմպերին համընթաց, սոցիալական պրոցեսների աննախընթաց զարգացումը հասարակական կյանքի ոլորտները վերածում են անընդհատ կատարելագործվող և ծավալվող օբյեկտների։ Այս երևույթը հարկադրաբար պահանջում է սոցիալական պլանավորման մեթոդների ու եղանակների կատարելագործում։ Պլանավորումը ներառում է նաև կառավարման պրոցեսը։ Դա կատարվում է շնորհիվ այն բանի, որ սոցիալական պլանավորումը ղեկավարվում է սոցիոլոգիական գիտակցված օրինաչափությունների ողջ կոմպլեքսով։ Զարգացած սոցիալիստական երկրների փորձը ցույց է տալիս, որ սոցիալական պլանավորումը լուրջ խնդիրներ է լուծել։

Հասարակական պրոցեսների կառավարումը սոցիալիզմի ժամանակ ձեռք է բերում գիտակցական բովանդակություն՝ կախված արտադրահարաբերությունների, տնտեսական բազիսի բնույթի փոփոխությունից։ Պլանաչափությունը, լինելով դրանց զարգացման էական կողմը, արտադրության սպառման, փոխանակման և բաշխման ոլորտներին գործառնության հատուկ բնույթ է հաղորդում, պահանջում անհրաժեշտ, օբյեկտիվ կապերի որոնում, տնտեսական պրոցեսների պլանաչափ, գիտակցական կազմակերպում և վերահսկում, որն անհնար է առանց սոցիալական պրոցեսների զարգացման համակողմանի պլանավորման։

Այսպիսով, հասարակական պրոցեսների կառավարման գործում պլանավորումը, որպես իմացության ակտիվության կոնկրետ դրսևորում, ստանում է ինքնուրույնություն։ Ինչպես ամեն մի ճանաչողություն հարաբերականորեն ինքնուրույն է իր օբյեկտների նկատմամբ, այնպես էլ սոցիալական պլանավորումը հարաբերականորեն ինքնուրույն է հասարակական պրոցեսների հանդեպ։ Այսպիսի ինքնուրույնությունը, ինչ խոսք, դուրս չէ իրական օրինաչափությունների, հասարակական պրակտիկայի շրջանակներից, այն բացարձակ



չէ և պայմանավորված է որոշակի հանգամանքներով։ Ինչպես նշել է Կ. Մարքսը Կապիտալում, ինքնուրույնության ձեռքբերման պատճառը նոր ֆունկցիաների ծագումն ու զարգացումն է, աշխատանքի հասարակական բաժանումը, հատկապես մտավոր աշխատանքի ինքնուրույնության ֆունկցիան, որը հետըզհետե ձեռք է բերում սոցիալական աճող ակտիվություն։

Հայտնի է, որ սոցիալ-քաղաքական խնդիրների լուծումը պայմանավորված է տնտեսական նվաճումներով։ Սակայն, ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «Տնտեսական զարգացումն իր հերթին մեծապես որոշվում է նրանով, թե որքան հաջող են լուծվում սոցիալ-քաղաքական խնդիրները»[10]։

Տնտեսական և սոցիալ-քաղաքական երևույթների լրիվ հաշվառումը հնարավոր է դառնում կոմպլեքսային, համակողմանի հետազոտությունների միջոցով։ Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ անհրաժեշտ է հասարակությունը դիտել որպես կենդանի, մշտապես զարգացող օրգանիզմ, որի ուսումնասիրության համար հարկավոր է արտադրահարաբերությունների օբյեկտիվ վերլուծություն։

Հասարակական կյանքի սոցիալ-քաղաքական և հոգևոր կողմերը, ինչպես նշվեց, զարգանալով տնտեսական գործոններից, հայտնի անկախության պայմաններում կարող են հասարակական կեցությունից ժամանակավորապես առաջ անցնել՝ տնտեսական և այլ շարժիչ ուժերի ազդեցությամբ։ Այս իմաստով նշված պրոցեսների, հատկապես գաղափարական հարաբերությունների պլանավորումը և կառավարումը տնտեսական նախադրյալների ստեղծմամբ չեն սպառվում, այլ պահանջում են լրացուցիչ միջոցներ, որոնց պատճառով փոփոխվում են պլանային ցուցանիշների բովանդակությունը, մի շարք գործոնների դերը, ինչպես նաև ժամանակի գործոնը։

Ինչպես տեսնում ենք, սոցիալական պլանավորման ակտիվ դերը հասարակական պրոցեսների կառավարման գործում դրսևորվում է հիմնականում նրա հարաբերական ինքնուրույնության շնորհիվ։ Սակայն այս հատկանիշի միակողմանի ըմբռնումը կարող է հանգեցնել լուրջ թյուրիմացությունների։ Բանն այն է, որ սոցիալական պլանավորումն ունի երկու կողմ՝ ակտիվ և պասսիվ, մի հանգամանք, որին գրականության մեջ առայժմ պատշաճ ուշադրություն չի նվիրվել։

Մեր կարծիքով, սոցիալական պլանավորումը չպետք է սահմանափակվի այն սոցիալական փոփոխությունների հաստատումով, որոնք տեղի են ունենում գիտության և տեխնիկայի առաջընթացի հետևանքով։ Սա պլանավորման սոսկ պասսիվ կողմն է։ Հասարակական պրոցեսների կառավարման մարքս-լենինյան գիտության տենդենցը այդ պրոցեսների զարգացումը առավելագույն արդյունավետ և օպտիմալ եղանակներով կազմակերպելն է։ Այս առումով պետք է որոշակիորեն տարբերել պրոցեսների զարգացման ընդհանուր հնարավորությունները ռեալ և օպտիմալ հնարավորություններից։

**ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ՆԿԱՏԵԼ, ՈՐ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ** կառավարմանն ու պլանավորմանը ժողովրդական մասսաների ակտիվ մասնակցությունը սոցիալիզմի զարգացման առանձնահատկություններից մեկն է։ Այդպիսի ակտիվությունը ձեռք է բերվում աստիճանաբար, մասսաների գիտակցական բարձր կազմակերպվածության և զարգացման օրինաչափությունների խոր իմացության շնորհիվ։ Սրա հիման վրա էլ հնարավոր է դառնում կատարելագործել հասարակական պրոցեսների զարգացման օպտիմալ և արդյունավետ կազմակերպման ընթացքը։

Հասարակական պրոցեսների պլանավորման գործում սոցիալական պլանավորման ակտիվ դերն այն է, որ վերջինս խթանում է արտադրության, սոցիալական կյանքի զարգացմանը, արագացնում գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը։ Ավելին, պլանավորումը արտադրությանն առաջադրում է գործնական խնդիրներ, որոշում հասարակական առաջընթացի տեմպերն ու ցուցանիշները, մարդկային հարաբերությունները, կենցաղը և այլն (կրթություն, լուսավորություն, առողջապահություն)։

Խոսելով պլանավորման ակտիվության մասին, նախ նկատի ունենք գի-

տակցության ակտիվ դրսևորման մոմենտը, երբ հասարակական գիտակցությունը առաջ է անցնում կեցությունից և կանխատեսում ո՛չ միայն առկա կեցությունը, այլև դրա հեռանկարները մոտակա և հեռավոր ապագայում։ Այդ ամենն արտացոլվում է կուսակցության քաղաքական փաստաթղթերում (ծրագիր, բանաձևեր, որոշումներ և այլն)։ Այդ փաստաթղթերում մշակվում են հասարակարգի շարժման ինչպես տնտեսական և քաղաքական, այնպես էլ սոցիալական նպատակները և դրանց հասնելու միջոցները։ Այս դրույթն ապացուցելու համար բավական է հետադարձ հայացք գցել ՍՄԿԿ անցած ուղու, նրա երեք ծրագրերի վրա, որոնք, վերջին հաշվով, պլանավորել են սոցիալական համապարփակ խնդիրներ և նպատակներ։ Այս տեսակետից էլ սոցիալական պլանավորման ակտիվությունը հասարակական պրոցեսների կառավարման գործում հանդես է գալիս նաև շնորհիվ այն բանի, որ այն հասարակական զարգացման օրինաչափությունների ճանաչման, յուրացման և խորացման նոր աստիճան է՝ կապված հասարակական հարաբերությունների մեջ գործնականորեն ավելի խոր ներթափանցման հետ։ Սոցիալական պլանավորումն արտացոլում է հասարակական սիստեմի և նրա առանձին օղակների վրա մարդկանց գիտակցական նպատակադիր ազդեցության պրոցեսը, որպեսզի «ապահովի նրանց արդյունավետ գործունեությունն ու զարգացումը»[11]։ Այդ նպատակով այն սոցիալական պրոբլեմների լուծման կոնկրետ եղանակներ և միջոցներ է հաստատում, ակտիվորեն միջամտում սոցիալական կյանքի շարժմանը, այդ շարժման հետևանքների պլանաչափ փոփոխմանն ու ձևավորմանը։

Սակայն պլանավորման ակտիվությունը դրսևորվում է ո՛չ միայն պլանների իրականացման, այլև պլաններ կազմելու պրոցեսում։ Այստեղ մեծանում է մարդկանց, կոլեկտիվների, սոցիալական խմբերի սուբյեկտիվ որակների նշանակությունը, որոնք էլ իրականացնում են այդ պլանավորումը։ Այս պրոցեսում անհրաժեշտ է հաղթահարել սուբյեկտիվ գործոնի ինչպես թերագնահատումը, այնպես էլ գերագնահատումը։ Սուբյեկտիվ գործոնի, տնտեսական շինարարության մեջ աշխատավորների ստեղծագործական ակտիվության դերի ուժեղացումը հնարավոր է օբյեկտիվ պրոցեսների համակողմանի ճանաչման և կիրառման միջոցով։

Այսպիսով, պլանավորման ակտիվությունն ապահովելու համար պահանջվում են սոցիոլոգիական կոնկրետ հետազոտություններ, քանի որ մեր գիտելիքները միայն վերջին հաշվով են համընկնում օբյեկտիվ պրոցեսին, իսկ գիտության զարգացման նպատակը գիտելիքի անվերջ մոտեցումն է օբյեկտիվ իրականությանը։

### ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ


1. Տե՛ս Лузан П. П., Планирование социального развития производственного коллектива. М., 1972, стр. 14.
2. Տե՛ս Тощенко Ж. Т., Социальное планирование, Красноярск, 1972, стр. 12.
3. Տե՛ս Социальное управление, планирование, прогнозирование. Киев, 1970, стр. 52.
4. Տե՛ս Бауэр А., Эйхгорн В. и др., Философия и прогностика. М., 1971, стр. 172.
5. Տե՛ս F. E Merill, Society and Culture. An Introduction to Sociology. New Gersey. 1962, p. 562.
6. Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, 1950, էջ 596։
7. Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 574։
8. «Плановое хозяйство», 1965, № 4, стр. 4--5.
9. Տե՛ս А. Н. Косыгин, Повышение научной обоснованности планов — важнейшая задача плановых органов. «Плановое хозяйство», 1965, № 4, стр. 3.
10. Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 2, 1970, էջ 142։
11. Տե՛ս Афанасьев В., В. И. Ленин и проблемы научного управления обществом. «Правда», 4 декабря, 1969.


# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆ՝ ԱՀԱ ՀԻՄՆԱԿԱՆ ՉԱՓԱՆԻՇԸ


**Մ. Կ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Չարենցավանի «Կենտրոնաձուլ» գործարանի դիրեկտոր
**Ժ. Բ. ՆԱՆՅԱՆ**
Ինժեներ–մետալուրգ


ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ անձնվեր աշխատանքով իրագործում է ՍՄԿԿ XXIV համագումարի՝ կոմունիստական շինարարության վերաբերյալ կանխագծումները։ Մեր լայնածավալ հայրենիքի բոլոր մասերում սովետական մարդիկ լարում են իրենց ջանքերը՝ բարձր ցուցանիշներով ավարտելու իններորդ հնգամյակը։

«ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության մասին» կուսակցության Կենտկոմի որոշումը լայն արձագանք գտավ նաև Չարենցավանի «Կենտրոնաձուլ» գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների շրջանում։ Մտնելով նախահամագումարյան սոցիալիստական մրցության մեջ, գործարանի կոլեկտիվը կանգնել է հարվածային հերթափոխի և ձգտում է արտադրական լավագույն ցուցանիշներով ու քաղաքական բարձր ակտիվությամբ դիմավորել հարազատ կուսակցության XXV համագումարը։

Սոցիալիստական արտադրության զարգացման հիմնական եղանակներից մեկը արտադրական կոոպերացումն ու մասնագիտացումն է, որն ապահովում է աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր, հումքի և նյութերի խնայողաբար օգտագործում, բարձրորակ արտադրանքի ստացում, նվազագույն ծախսումներով առավելագույն քանակի արտադրանքի թողարկում։ 1965 թ. տնտեսական ռեֆորմից հետո ՍՍՀՄ հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստրության համակարգում ստեղծվեց «Գլխկենտրոնաձուլ» վարչությունը, որի հիմնական նպատակն է ձուլվածքներով, կռվածքներով և զոդածոներով բավարարել երկրի ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջները։ Մեր գործարանն այդ վարչության ձուլվածքների արտադրության ասպարեզում մասնագիտացված ձեռնարկություններից մեկն է։

Սկզբնական տարիներին գործարանն ընդամենը մի քանի պատվիրատուներ ուներ, փոքր էր նրա հզորությունը և ձուլվածքների անվանացանկը։ Տարեցտարի աճելով և հզորանալով, այն այժմ բարձրորակ ձևավոր ձուլվածքներով ապահովում է Սովետական Միության մեքենաշինական մի շարք ձեռնարկությունների։ Գործարանի արտադրանքի հիմնական սպառողներն են՝ Չարենցավանի հաստոցաշինական, Երևանի ֆրեզերային հաստոցների, Կիրովականի ճշգրիտ հաստոցների և «Ավտոգենմաշ», Հոկտեմբերյանի հաստոցա-

ձեռնարկությունների մեջ առաջնություն գրավելու համար սահմանված փոխանցիկ կարմիր դրոշը: 1974 թվականին գործարանի 185 աշխատողներ արժանացել են «Սոցիալիստական մրցության հաղթող»-ի կրծքանշանի, իսկ 27-ը՝ «Իններորդ հնգամյակի հարվածային»-ի կոչման:

Կոլեկտիվի ջանքերին նոր լիցք հաղորդեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան, ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան ու հուլիսյան պլենումների որոշումները և «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի ընդունած որոշումը: Մեր հանրապետության նկատմամբ կուսակցության և կառավարության հոգատարությանը գործարանի կոլեկտիվը պատասխանում է ոգեշնչված աշխատանքով:

1975 թ. առաջին կիսամյակում արտադրանքի իրացման պլանը կատարվել է 103,4 տոկոսով (1971 թ. առաջին կիսամյակի համեմատ ավելացել է 30,2 տոկոսով): Պլանից դուրս իրացվել է 121 հազար ռուբլու արտադրանք: Ապրանքային արտադրանքի թողարկման պլանը կատարվել է 103,4 տոկոսով, 1971 թ. համեմատ, 36,4 տոկոսով ավելի: Առաջին կիսամյակում թողարկվել է 10.180 տոննա չուգուն, պլանը կատարվել է 101 տոկոսով՝ 1971 թ. համեմատ, 26 տոկոսով ավելի: Սկսած 1974-ից գործարանը պլանային վնասով աշխատող ձեռնարկությունից դարձել է շահութաբեր:

1975 թ. առաջին կիսամյակում ապրանքային արտադրանքի 1 ռուբլուն ընկնող ծախսերը կազմել են 96,4 կոպեկ, պլանով նախատեսված 99 կոպեկի դիմաց (1971 թ. համեմատ իջել է 16,33 կոպեկով, կամ 14,48 տոկոսով): Զգալիորեն բարձրացել է ֆոնդահատույցը և 1974-ին կազմել 98,2 կոպեկ՝ 1971-ի 76,4 կոպեկի դիմաց:

Այդ հաջողություններին կոլեկտիվը հասել է շնորհիվ արտադրության նպատակասլաց կազմակերպման ու կառավարման, աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահության բարձրացման, առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների ներդրման, որոնք ուղղված են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը 1975 թ. առաջին կիսամյակում կատարվել է 103,1 տոկոսով և գերազանցում է միջին աշխատավարձի աճին 1,5 տոկոսով: Աշխատանքի արտադրողականության աճը, 1971 թ. առաջին կիսամյակի համեմատությամբ, կազմում է 26 տոկոս: Մեկ աշխատողին ընկնող արտադրանքի տարեկան միջին աճը 1974 թ., 1971 թ. համեմատությամբ, կազմել է 1.194 ռուբլի:

ԸՆԹԱՑԻԿ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ որոշակի են: Սակայն դրանք չեն հանգստացնում մեր կոլեկտիվին: ՀԿԿ Կենտկոմի այս տարվա հուլիսյան պլենումում տված զեկուցման մեջ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը շեշտեց, որ անհրաժեշտ է գործն այնպես կազմակերպել, որպեսզի այսուհետև ևս զգալիորեն բարձրացվի արդյունաբերական արտադրության արդյունավետությունը՝ եղած արտադրական կարողությունների ավելի լրիվ օգտագործմամբ, արտադրության մեջ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորմամբ: Այդ ցուցումը լիովին վերաբերում է նաև «Կենտրոնաձույլ» գործարանի կոլեկտիվին, որը ոչ մի ջանք չի խնայի՝ անթերի իրագործելու պլենումի պահանջները:

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ արտադրության արդյունավետության կարևորագույն գործոններից է աշխատողների որակավորման բարձրացումը: Այդ առումով մեր գործադրած ջանքերը տվել են շոշափելի արդյունքներ: 1974 թ. բանվորների որակավորումը բարձրացնելու նպատակով անցկացվել է տեխմինիմումի 473 պարապմունք, որից հետո հարյուրավոր բանվորներ բարձրացրել են իրենց որակավորումը: Մի շարք ինժեներա-տեխնիկական աշխատողներ և բանվորներ 1974 թ. ընթացքում փորձի փոխանակման կարգով եղել են Մոսկվայի «Ստանկոլիտ» գործարանում, իսկ 7 մարդ մեկական ամսով գործուղվել է Գորկի քաղաքի «որակավորման բարձրացման ինստիտուտ:



Նշված միջոցառումները նպաստել են աշխատանքների կատարման որակի բարելավմանն ու աշխատանքի արտադրողականության աճին: Գործարանում մեծ ուշադրություն է նվիրվում կադրերի քաղաքական և տնտեսագիտական մակարդակի բարձրացմանը: Այժմ մեզ մոտ գործում են քաղտնտեսության, տնտեսագիտական և արդյունաբերության էկոնոմիկայի խմբակներ, որոնց մեջ ընդգրկված են գրեթե բոլոր աշխատողները:

ՍՄԿԿ XXIV համագումարում շեշտվեց, որ յուրաքանչյուր կոմունիստ պետք է լինի հնգամյա պլանի հաջող կատարման համար մղվող պայքարի ավանգարդում, լինի մասսաների իսկական դաստիարակը և կազմակերպիչը, նորի և առաջավորի ջատագովը: Մեր գործարանի կուսակցական կազմակերպությունը գլխավորում է կոլեկտիվի ստեղծագործական նախաձեռնությունը և բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին պայքարի հանում արտադրության արդյունավետության բարձրացման, ռեզերվների ավելի լրիվ օգտագործման համար, դրանով իսկ ապահովելով հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների կատարումը: Գործարանի լավագույն կոմունիստ աշխատողներից են ձուլման արտադրամասի պետ Վարդգես Լևոնյանը, մոդելագործ Մարտիրոս Կոստյանը, ձուլող բանվորներ Արամ Բարսեղյանը, Սարգիս Գալոյանը, Լիդա Բաղյանը, Բելլիկ Եփրեմյանը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Գառնիկ Բաբլանյանը, ֆրեզերագործ՝ Ջավեն Հակոբյանը և շատ ուրիշներ, որոնք, քայլելով սոցիալիստական մրցության ավանգարդում, իրենց հարուստ փորձն ու գիտելիքներն են հաղորդում երիտասարդ բանվորներին, դաստիարակում են նրանց կոմունիստական աշխատանքի ոգով: Արտադրության առաջավոր են ֆրեզերագործ Վլադիմիր Շիմանսկին և խառատ Գենադի Կորոշկինը:

Կադրերի հետ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի, նրանց համար ավելի նպաստավոր պայմաններ ստեղծելու շնորհիվ նկատելիորեն պակասել է կադրերի հոսունությունը: Այսպես, 1971 թ. 26 տոկոսից անցյալ տարի այն իջել է 17 տոկոսի:

ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐՈՒՄ կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ «մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը հանրային արտադրության գերագույն նպատակն է սոցիալիզմի օրոք»: Մեր ձեռնարկության արտադրական հաջողությունները նպաստել են աշխատավորների աշխատանքի և հանգստի պայմանների բարելավմանը: Տարեցտարի կանաչապատվում և ծաղկապատվում է գործարանի տերիտորիան և այժմ այն իրավամբ կարելի է անվանել գործարան-այգի: 1973 թ. գործում է ձեռնարկության ջերմոցը, որը հնարավորություն է ընձեռում կլոր տարին աշխատավորներին բավարարել թարմ պոմիդորով ու վարունգով: Հաշվի առնելով արտադրամասերի աշխատանքային պայմանները, աշխատողներին անվճար տրվում է կաթնամթերք: 1974 թ. ձեռնարկությանը կից գործում է պիոներական ճամբար, ուր ամռանը իրենց հանգիստն են անցկացնում մեր աշխատողների երեխաները, որոնց սնունդը տրվում է ձեռնարկության հաշվին:

Հնգամյակի ընթացքում գործարանի աշխատողների համար շահագործման են հանձնվել 7.550 քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածությամբ երեք բնակելի շենք:

Համաձայն գործարանի հետ կնքած պայմանագրի, Երևանի տեխնիկական էսթետիկայի ինստիտուտը պատրաստել է քշտարման արտադրամասի վերակառուցման գծագրերը, որոնց հիման վրա մինչև տարեվերջ կվերակառուցվի արտադրամասը: Դրա շնորհիվ լավագույն պայմաններ կստեղծվեն բանվորների համար: Հետագայում վերակառուցվելու են նաև գործարանի մյուս արտադրամասերը, կբարելավվեն աշխատանքային պայմանները:

Մեր գործարանի աշխատողները, ձգտելով արժանավայել դիմավորել ՍՄԿԿ XXV համագումարը, համակված են մի ցանկությամբ՝ այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, իսկ վաղը՝ ավելի լավ, քան այսօր:

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ԵԶՐԱՓԱԿԻՉ ՏԱՐՈՒՄ

**Է. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի բանվոր և գյուղական երիտասարդության բաժնի վարիչ

*Կոմունիզմի կառուցման գործում ՀամԼԿԵՄ-ի օրավուր աճող դերն ու նշանակությունը, հասարակական կյանքի առաջընթացը, իններորդ հնգամյակի խնդիրները նոր, բարձր պահանջներ են առաջադրում կոմերիտմիությանը: Կոմերիտականների բազմամիլիոնանոց բանակն ակտիվորեն մասնակցում է մեր երկրի էկոնոմիկայի զարգացմանը, նպաստում դրա բուռն վերելքին: ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն այդ կապակցությամբ ասաց. «Նույնիսկ դժվար է պատկերացնել տնտեսական ու կուլտուրական շինարարության մի այնպիսի տեղամաս, որտեղ կիրառություն չգտնեին կոմերիտականների եռանդը, ստեղծագործությունը և խիզախումը» (ՍՄԿԿ XXIV* համագումարի նյութերը, *էջ 105):*

*Սովետական Միության տնտեսական առաջընթացի գործում կոմերիտմիության աճող դերն առավել ցայտուն դրսևորվեց ընթացիկ՝ իններորդ հնգամյակում: Անցած չորսուկես տարում պետական առաջադրանքների կատարման համար է պայքարել նաև Հայաստանի կոմերիտական կազմակերպությունը: Այժմ մեր հանրապետությունում ավելի քան 135 հազար կոմերիտականներ, 4.100 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ էկոնոմիկայի տարբեր բնագավառներում իրենց ուժերն ու եռանդն են ներդնում կուսակցության XXIV համագումարի առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու, իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա արտադրական ծրագիրը պատվով կատարելու համար:*

*Երիտասարդության ուժերի մոբիլիզացմանը մեծապես նպաստում են համամիութենական կոմերիտական ժողովները, որոնք գումարվում են յուրաքանչյուր տարվա սկզբին: Ընթացիկ տարվա հունվարին հանրապետության բոլոր սկզբնական կոմերիտական կազմակերպություններում անցկացվեցին այդպիսի ժողովներ, որոնք ամփոփեցին հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում կոմերիտականների ձեռք բերած հաջողությունները, բացահայտեցին թերությունները, մշակեցին կոնկրետ միջոցառումներ՝ եզրափակիչ տարում դրանք վերացնելու, ավելի բարձր արդյունքներ ձեռք բերելու համար: Կոմերիտական կազմակերպությունները, կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվները միաժամանակ ստանձնեցին սոցիալիստական բարձր պարտավորություններ, ընդունեցին հանդիպական պլաններ, ջերմորեն և խանդավառությամբ արձագանքեցին ՍՄԿԿ Կենտկոմի՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմումին: Նրանք պատրաստակամություն հայտնեցին հաջողությամբ փակել ինչպես եզրափակիչ տարին, այնպես և հնգամյակն ամբողջությամբ վերցրած:*

*ՍՄԿԿ XXIV համագումարն ընթացիկ հնգամյակի տնտեսական գլխավոր խնդիրներից մեկը համարեց հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը: Կոմերիտմիության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ երիտասարդական կոլեկտիվների պարտավորություններում մտցվել են այդ խնդրից բխող կետեր. երիտասարդության ջանքերն ուղղվել են աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացմանը, գործող սարքավորումների լիարժեք օգտագործմանը, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի, վառելիքի խնայողությանը:*

*Կոմերիտական կազմակերպություններն իրենց գործունեությամբ նպաստում են սոցմրցության ծավալմանը, երիտասարդությանն ակտիվորեն ներգրավում անհատական, միջբրիգադային, միջկոլտնտեսային և միջգործարանային սոցիալիստական մրցության մեջ: Նրանք մշտական հսկողություն են սահմանում սոցմրցության նկատմամբ, եռամսյակը մեկ ամփոփում, հրապարակում դրա արդյունքները, խրախուսում հաղթողներին, ընդհանրացնում դրական փորձը, հասարակական կարծիք ստեղծում թերացողների, աշխատանքային կարգապահությունը խախտողների շուրջը: Սոցմրցության կազմակերպման ու ծավալման ուսանելի փորձ ունեն Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման Երևանի էլեկտրալամպերի, էլեկտրասարքավորումների գործարանների, Լենինականի Չկալովի անվան կարի ֆաբրիկայի, Ստեփան Շահումյանի անվան Կարմիր դրոշի շքանշանակիր կաշվի արտադրական միավորման և մի շարք այլ կոմերիտական կազմակերպություններ:*

*Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձա-մոլիբդենային կոմբինատի կոմերիտականներն ու երիտասարդները շարունակում են կոլեկտիվի լավագույն ավանդույթները, ակտիվորեն օգնում կոմբինատի կուսկազմակերպությանը՝ բանվոր դասակարգի երիտասարդ հերթափոխի աշխատանքային դաստիարակության գործում: ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ կոմերիտականներն ու երիտասարդներն ընդգրկվել են համամիութենական սոցմրցության մեջ: Երիտասարդ բանվորները ձգտում են հնգամյա պլանը կատարել ժամկետից շուտ, սեփական աշխատանքով նպաստել տեխնիկական առաջընթացի արագացմանը, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը: Այս շարժումը վերածվել է լենինյան պատգամներին հավատարմության ստուգատեսի: «Լինել հարվածային աշխատանքի առաջամարտիկ, ամենուր ցուցաբերել նախաձեռնություն, հասնել այն բանին, որպեսզի կոմբինատը դառնա օրինակելի»— այս նշանաբանով են առաջնորդվում այստեղ ստեղծված կոմերիտական-երիտասարդական տասնհինգ կոլեկտիվները, կոմերիտական երկու հերթափոխերն ու ողջ երիտասարդությունը: Կոմբինատի ԼԿԵՄ կոմիտեն խորամուխ է լինում արտադրության հարցերի մեջ, օգնում նախաձեռնությունների հեղինակներին, գործնականորեն զբաղվում սոցմրցության կազմակերպման ու ծավալման հարցերով: Դրանով պետք է բացատրել, որ այսօր ձեռնարկությունում չկա արտադրական նորման չկատարող ոչ մի երիտասարդ:*

*Կոմբինատի կոմերիտական կազմակերպությունում մեծ մասսայականություն են վայելում երիտասարդ մոսկվացիների՝ «Հնգամյակին հարվածային եզրագիծ», «Ամեն ինչ աշխատանքային հաղթանակի համար», «Իր և այն տղայի փոխարեն» հայրենասիրական նախաձեռնությունները: Դրանց առաջին արձագանքողներից մեկը դարձավ բաց հանքի բուլդոզերավար, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ, ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Հնգամյակի երիտասարդ գվարդիական» ոսկե կրծքանշանի ասպետ Ա. Արշակյանը: Նա իր հայրենանվեր աշխատանքով, հասարակական ակտիվ գործունեությամբ արժանացել է լենինգրադների մեծ հարգանքին: Ա. Արշակյանը դեռևս 1973 թ. կատարել է իններորդ հնգամյակի իր առաջադրանքները և վաղուց աշխատում է տասներորդ հնգամյակի հաշվին: Հետևելով մոսկվացիների «Իր և այն տղայի փոխարեն» նախաձեռնությանը՝ նա պարտավորվեց մեկ օրում կատարել երկու արտադրական նորմա, աշխատել նաև համերկրացի, Հայրենական մեծ պատերազմի լեգենդար հերոս Հունան Ավետիսյանի փոխարեն: Նրա բուլդոզերի վրա գրված է. «Հերոսները մեզ հետ են, մեր շարքերում»: Ա. Արշակյանը ո՛չ միայն բարեխիղճ աշխատող է, այլև վաստակաշատ ռացիոնալիզատոր, ընտանիքի լավ հայր:*

Առանց արտադրությունից կտրվելու սովորել և ավարտել է Ղափանի լեռնամետալուրգիական տեխնիկումը: Լեռնագործների շրջանում նա բազմաթիվ հետևորդներ ունի:

Սոցիալիստական մրցությունն արդյունավետ է կազմակերպում Լենինականի Ջկալովի անվան կարի ֆաբրիկայի կոմերիտական կազմակերպությունը: Ֆաբրիկան 1974 թ. դեկտեմբերի 26-ին նվաճեց իններորդ հնգամյակի բնագիծը: Հնգամյակի անցած տարիներին այստեղ տնտեսվել է 550 հազար քառակուսի մետր հումք, որը հնարավորություն է տվել ձեռնարկության կոլեկտիվին՝ մեկ ու կես ամիս արտադրանք թողարկել դրա հաշվին: Ֆաբրիկայի աշխատողների 65 տոկոսը կոմերիտականներ և երիտասարդներ են. կոլեկտիվի ձեռք բերած հաջողություններում իր ծանրակշիռ բաժինն ունի կոմերիտական կազմակերպությունը: Կոմերիտական-երիտասարդական երեք կոլեկտիվներ արժանացել են կոմունիստականի բարձր կոչման, իսկ չորսը պայքարում են այդ կոչման համար: Արդյունավետ են գործում որակի միջանցիկ բրիգադները: Յուրաքանչյուր երկրորդ նորարարը և գյուտարարը կոմերիտական է: Ծավալված սոցիալիստական մրցության ընթացքում այստեղ ծնվել են մի շարք արժեքավոր նախաձեռնություններ ու շարժումներ: Այստեղ լայն արձագանք են գտել նաև տեքստիլ կոմբինատի երիտասարդության սկսած «Մրցություն-համագործակցություն» շարժումը, «Որակին՝ կոմերիտական հոգատարություն» նախաձեռնությունը:

Հայրենասիրական նախաձեռնությունները աշխատանքի նկատմամբ կոմերիտականների կողմից կոմունիստական վերաբերմունքի դրսևորման, սոցմրցության բարձրագույն ձևի արտահայտություն են: Դրանք արժանանում են կոմերիտական մարմինների ու սկզբնական կազմակերպությունների ուշադրությանը:

Անցած տարի ՀԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն հավանություն տվեց Երևանի «Արդկապ» գործարանի «Հերոսները մեզ հետ են, մեր շարքերում», լուսատեխնիկական գործարանի «Կոմերիտական հսկողություն՝ արտադրանքի որակին», Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության կոմերիտական կազմակերպության «Կոմերիտական փաստաթղթերի փոխանակման տարում գերազանցենք հնգամյակի լավագույն ցուցանիշները» նախաձեռնություններին և հանձնարարեց կոմերիտական կազմակերպություններին, քաղկոմ-շրջկոմներին՝ լայնորեն արմատավորել դրանք: ԼԿԵՄ կոմիտեները ամենուրեք պրոպագանդում և մասսայականացնում են այդ նախաձեռնությունները, դրանք համարելով հնգամյակի եզրափակիչ տարվա պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման լավ միջոց: Այս առումով ուշագրավ է Երևանի, Լենինականի, Ղափանի, Աբովյանի, Նոյեմբերյանի, Ախուրյանի, Արտաշատի և մի շարք այլ քաղաքային ու շրջանային կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը:

Մայրաքաղաքի 130 հազարանոց կոմերիտական կազմակերպության ավելի քան 50 հազար անդամներ անմիջականորեն աշխատում են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում: Նրանք հնգամյակի եզրափակիչ տարին դիմավորեցին շոշափելի հաջողություններով: 304 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ արժանացել են կոմունիստականի բարձր կոչման: Հնգամյակի եզրափակիչ տարում քաղաքի կոմերիտական կազմակերպությունները մրցություն են ծավալել «Աշխատանքի բարձր որակի համար», «Որակին՝ կոմերիտական հոգատարություն», «Հնգամյակի եզրափակիչ տարում՝ հաղթական եզրագիծ» նշանաբաններով:

ԵԶՐԱՓԱԿԻՉ ՏԱՐՈՒՄ ԼՈՒՐՋ ԽՆԴԻՐՆԵՐ ԵՆ լուծում հանրապետության գյուղական կոմերիտական կազմակերպությունները: Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի և ՀամԼԿԵՄ XVII համագումարի որոշումները, նրանք մոբիլիզացնում են կոլտնտեսային և սովխոզային երիտասարդության ուժերը՝ գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրները հաջողությամբ իրականացնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու



համար: Այժմ ավելի քան 40 հազար պատանիներ ու աղջիկներ, 1.450 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ աշխատում են գյուղատնտեսական մթերքների արտադրության վճռական տեղամասերում: Ջերմորեն արձագանքելով կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումին և «1975 թվականին հողագործական ու անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմանը՝ նրանք տարեսկզբին ստանձնեցին սոցիալիստական բարձր պարտավորություններ և խոստացան հնգամյակի եզրափակիչ տարին ավարտել լավագույն արդյունքներով:

Գյուղի երիտասարդ աշխատավորների շրջանում ծավալված սոցիալիստական մրցությանը նոր լիցք հաղորդեցին ՀամԼԿԵՄ XVII համագումարի որոշումները, որոնց կենսագործման ընթացքում ծնվեցին և կյանքի կոչվեցին մի շարք արժեքավոր նախաձեռնություններ, կատարվեցին հայրենանվեր շատ լավ գործեր: Նոր բովանդակություն ստացավ «Հարուստ հեկտարի համար», «Հարուստ ֆերմայի համար» պայքարող երիտասարդական կոլեկտիվների միջև ծավալված շարժումը: Եվ այսօր ուրախությամբ պետք է նշել, որ 190 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ և ավելի քան երկու հազար պատանիներ ու աղջիկներ ժամկետից շուտ կատարեցին հնգամյակի եզրափակիչ տարվա, իսկ ավելի քան 750 կոմերիտականներ՝ իններորդ հնգամյակի առաջադրանքները և այժմ աշխատում են տասներորդ հնգամյակի հաշվին:

Օրինակի ուժը վարակիչ է: Առաջավոր շատ կոմերիտականներ անձնական օրինակով, լավ գործով խանդավառում են ընկերներին, նրանց տանում իրենց հետևից: Մեր հանրապետությունում հայտնի են Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Երիտասարդ գվարդիական» ոսկե կրծքանշանի ասպետ, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Գեղեցիկ Կարապետյանի ղեկավարած բանջարաբուծական կոմերիտական-երիտասարդական օղակի հայրենանվեր գործերը: Երիտասարդական այս կոլեկտիվը Հայաստանում առաջինը հանդես եկավ «Իններորդ հնգամյակը երեքուկես տարում» նախաձեռնությամբ: Օղակի անդամներն իրենց խոսքը գործի վերածեցին և 1974 թ. նվաճեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության հնգամյակի բնագծերը: Եզրափակիչ տարում նրանք աշխատում են նոր եռանդով, հողից ավելի շատ բարիք ստանալու ձգտումով:

Առաջավորի լավ անուն են վաստակել նաև Էջմիածնի շրջանի Աղավնատան գյուղի կոլտնտեսության՝ Զոյա Հարությունյանի, Թալինի շրջանի Դալարիկ գյուղի սովխոզի՝ Ալբերտ Ալեքսանյանի, Շամշադինի շրջանի Ջինարի գյուղի կոլտնտեսության՝ Էֆիգենյա Առուստամյանի ղեկավարած և ուրիշ կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներ, որոնք աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ են ծառայում:

Հերոսական աշխատանքի օրինակներ են ցույց տալիս կոմերիտական երիտասարդական մելիորատիվ ջոկատները, որոնք միայն վերջին երկու տարում քարերից մաքրել և պիտանի են դարձրել ավելի քան չորս հազար հեկտար անօգտագործելի հողեր, ոռոգման համար հարթեցրել են մոտ 10 հազար հեկտար հողատարածություն, բարելավել ավելի քան 22 հազար հեկտար խոտհարք ու արոտավայր: Նրանց միջև գործարար սոցիալիստական մրցություն ծավալելու նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը և «Հայգյուղտնտեխնիկայի» հանրապետական միավորումը դեռևս անցյալ տարվանից սահմանել են փոխանցիկ դրոշներ ու դրամական մրցանակներ, որոնք հաղթողներին են հանձնվում տարվա արդյունքներն ամփոփելուց հետո: Անցած տարի փոխանցիկ դրոշը նվաճեց Աբովյանի շրջանի մելիորատիվ ջոկատը:

Հանրապետության գյուղական կոմերիտական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսական մասնագիտությունների պրոպագանդմանը: Այս տարի հաջողությամբ անցկացվեցին էլեկտրախուզի,

մեքենայական կթի երիտասարդ վարպետների ստուգատես-մրցույթները: Դրանք կոմերիտականների ու երիտասարդների շրջանում հետաքրքրություն են առաջացնում այդ մասնագիտությունների հանդեպ:

ՀԼԿԵՄ Կենտկոմը, շրջանային կոմիտեները և սկզբնական կոմերիտական կազմակերպությունները ուղեցույց են ընդունում ՀամԼԿԵՄ XVII համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ պետք է վստահել երիտասարդներին, հենվել երիտասարդության ներհատուկ խանդավառության և ընդհանուրի օգտին աշխատելու ակտիվ ձգտման վրա և դրա հետ միասին օգնել ճիշտ կողմնորոշվելու կյանքում, երիտասարդությանը զինել գիտելիքներով ու ավագ սերունդների փորձով:

Լենինյան կոմերիտմիությունը ոսկե էջեր է գրել մեր երկրի սոցիալիստական շինարարության պատմության մեջ: Չկա այնպիսի մի կառույց, լինի դա Վոլխովստրոյը, Դնեպրոգէսը, Մագնիտկան, թե Շիր-կանալը կամ Բայկալ—Ամուրյան մագիստրալը, որտեղ մեր անծայրածիր երկրի բազմազգ երիտասարդության ավանգարդը՝ կոմերիտմիությունը, իր միտքն ու կամքը, աշխատանքային անսպառ եռանդը ներդրած չլինի: Իններորդ հնգամյակի եզրափակիչ տարում մեր Միության բազմաթիվ կառույցներում, որոնք ՀամԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ հայտարարվել են համամիութենական կոմերիտական հարվածային կառույցներ, իրենց ամուր բազկի ուժը և երիտասարդ սրտերի կրակն են տալիս հարյուր հազարավոր երիտասարդներ: Հայրենասիրական այդ շարժմանը ակտիվորեն մասնակցում է նաև մեր հանրապետության երիտասարդությունը: Միայն 1975 թ. Հայաստանից համամիութենական կոմերիտական հարվածային կառույցներ պետք է մեկնեն 1.200-ից ավելի պատանիներ ու աղջիկներ: Այսօր ԲԱՄ-ի «ԿամԱԶ» գործարանի, Ուստ-Իլիմի թղթի-ցելյուլոզի կոմպլեքսի, ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտու և մի շարք կարևոր այլ կառույցներում հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ իրենց ինտերնացիոնալ պարտքն են կատարում, ցուցաբերում աշխատանքային խիզախումների լավագույն օրինակներ:

Հանրապետության կոմերիտականներն ու երիտասարդները բերկրանքով ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումը ՍՄԿԿ XXV համագումարը հրավիրելու մասին և այժմ պայքարում են այն արժանավայել գործերով դիմավորելու համար: Կոմերիտական կազմակերպություններն ակտիվորեն մասնակցում են կուսակցության XXV համագումարին լենինյան կոմերիտմիության աշխատանքային զեկույցի տակ ստորագրելու պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը: Այս նոր շարժումը ևս աշխատանքային սխրանքների է մղում Հայաստանի երիտասարդությանը և հնգամյակի եզրափակիչ տարվա արտադրական ծրագրերի հաջող կատարմանը:

# ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ 100

## ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄԻՑ՝ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵԱԼԻԶՄ

ՄԵԾ ԳՐՈՂԸ յուրովի պատկերն ու արտացոլումն է իր ժամանակաշրջանի, նրա ստեղծագործությունը՝ իր ժողովրդի հասարակական-քաղաքական կյանքի գեղարվեստական տարեգրությունը: Ավետիք Իսահակյանը հայ դասական այն բացառիկ գրողն է, որի միայն ստեղծագործական-հասարակական կյանքը բովանդակում է պատմական մեծ ժամանակաշրջան՝ 1890—1950-ական թվականները:

Ավ. Իսահակյանի արվեստն սկզբնավորվել է հայրենի Շիրակում, սակայն ձևավորվել ու զարգացել է հասարակական կյանքի խոշոր ազդակների, ազգային ճգնաժամերի ու հայկական կոտորածների, առաջին համաշխարհային պատերազմի ու ցեղասպանության, ռուսական առաջին հեղափոխության ու Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիստական շինարարության ներգործությամբ: Մի կողմից՝ ժողովրդի տագնապալից կյանք, ցեղասպանություն, մյուս կողմից՝ ազգային սոցիալիստական վերածնության, Հայրենական մեծ պատերազմում հաղթանակի բերկրանք:

Այդ կետմաններով է ընթացել Իսահակյան-բանաստեղծի զարգացման ուղին՝ դժվարին, բարդ ու հակասական, բայց բնորոշ իր անդուլ վերելքով, ստեղծագործական-քաղաքացիական սխրանքներով: Գեղագիտական-փիլիսոփայական-քաղաքական այլազան հայացքներից նա կարողացել է հետզհետե հստակվել ու բյուրեղանալ, քննադատական ռեալիզմի ստեղծագործական մեթոդից հասնել սոցիալիստական ռեալիզմին:

ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆԻ առաջին ստեղծագործությունը՝ *Ծաղիկ էի նորաբողբոջ*, տպագրվում է 1892-ին («Տարազ», № 42), երբ նա տասնյոթ տարեկան էր, իսկ 1898 թ. լույս է տեսնում քսաներեքամյա բանաստեղծի առաջին ժողովածուն՝ *Երգեր ու վերքեր*-ը:

Միանգամից «*հայրենաշունչ* բանաստեղծի» (Պ. Պռոշյան) համբավ ձեռք բերեց երիտասարդ Իսահակյանը, մամուլում մատնանշվեց նրա գրական վարպետությունը, ստեղծագործության էությունը՝ *ժողովրդական* ոգին: «...Բանաստեղծն իր կախարդի գավազանով փշրում է բոլոր պատնեշները... մեզ ձուլում մեր մեծ մոր, մեր հարազատ *ժողովրդի* հետ...» («Մուրճ», 1898, № 6):

Թեև երգերի ստեղծման աշխարհագրական շրջանակը մեծ է՝ Ալեքսանդրապոլ, Ղազարապատ, Էջմիածին, Իգդիր, Ապարան, Կարս, Արգինա, Հառիճ, Թիֆլիս, Երևան, նաև՝ Վիեննա, Գալիցիա, Դրեզդեն, Օբեր-Հոլց, Լայպցիգ, Բեռլին, Վարշավա, Կիև, սակայն դրանցում գրեթե ամբողջությամբ պատանեկան սիրո, հայրենի բնության իրար զուգորդվող ու համադրվող կենսաթրթիռ զգացմունքներ են՝ մերթ լայնախոհ ու վսեմաշունչ, մերթ անամոք և հուսաբեկ: Բոլոր դեպքերում, սակայն, հընչում է երիտասարդ բանաստեղծի պարզ ու ջինջ, անմիջական ու սրտաբաց խոսքը՝ բյուրեղյա մաքրությամբ ու զգացողությամբ.

*Կանգնեցընում եմ բազուկըդ ահա,*
*Ինչպես ոխակալ օձն անապատի,*
*Եվ քո քարացած բռունցքում հիմա*
*Ես սուրն եմ դնում ահեղ ճշմարտի:*

Իր ժողովրդին ուղղած Իսահակյանի կոչերն ստանում էին քաղաքական բովանդակություն. «Վե՛ր կաց... սիրելիս, և գոտեպնդվիր... թող եղբայրության, և իրավունքի, և ազատության զանգը որոտա քո երկաթեղեն լեռներից վրա» («Ողբում եմ»), «ջնջիր բոլոր չարերին ու բռնակալներին» («Արծվամանուկ»): Պատկերելով գյուղացիական հեղափոխական ընդվզումներից մի դրվագ, նա կերտում էր վրաց-հայ-օսապստամբ գյուղացիների ղեկավար Ծաքրո Վալիշվիլու հմայիչ կերպարը, նրա բռնած դրոշակի վրա փողփողում էին՝ «Ազատություն, եղբայրություն, հավասարություն» նշանաբաները: «— Մենք բոլորս կկովենք, մենք բոլորս պատրաստ ենք մեռնելու. սուրբ է մեզ համար ազատության դրոշակը», գոչում էին ապստամբ գյուղացիները:

Այդ կերպարը նոր էր հեղափոխության, նոր էր նաև հայ գրականության մեջ, Լենինի արտահայտությամբ՝ «նոր տիպ— երիտասարդ գիտակից գյուղացին»:

ԻՍԱՀԱԿՅԱՆԸ, ԱՐԴԱՐԵՎ, մեծ քաղաքացի բանաստեղծ էր, հասարակականգրական կյանքի զգայաչափ: Հետևելով նրա երկերի տարեթվերին, կարելի է անվրեպ պատկերացնել հասարակական-պատմական տեղաշարժերը:

1908—1916 թվականներին կտրուկ փոխվում էին իրադարձությունները, կազմակերպվում *ազգամիջյան* արյունահեղ կոտորածներ— հայկական ջարդերը՝ 1906-ին, Ադանայի կոտորածը՝ 1909-ին: Իշխում էր համատարած ռեակցիա, ծանր պարտության էր մատնվում ռուսական առաջին հեղափոխությունը: Ապա բռնկվեց առաջին համաշխարհային պատերազմը, տեղի ունեցավ առաջին ցեղասպանությունը՝ հայկական գենոցիդը:

Իսահակյանի ստեղծագործությունը նույնպես փոխվեց:

Ռեակցիան բանաստեղծին ներկայանում էր իբրև ամենակուլ ուժ, ժողովուրդներին հասած «հավիտյան աղետ»: Ամենուրեք բռնություններ, արյունահեղ պատերազմներ, խոշտանգումներ. մարդկությանն ինչպե՞ս ազատել այդ դժոխքից: «Աբու-Լալա-Մահարի» պոեմով բանաստեղծը յուրովի է պատասխանում իր իսկ հարցադրմանը: Զարթնում, բոցավառվում է բացասման ոգին, բացասվում փառքը, հարստությունը, ընկերությունը, սերն ու կինը, ընտանիքը, քաղաքակրթությունը, համայնքը, հայրենիքը, ամեն ինչ, ընդհուպ ընդհանրապես մարդը: «Կույր ու գուլ մարդի՛կ ...իրար կոկորդից պատռ եք հանում և դարձնում աշխարհն՝ ահավոր ջեհնեմ»,— ասում էր բանաստեղծը, տարփողելով՝ «թե ավելի վատ, ավելի զազիր՝ քան մարդը դաժան— այդ մարդն է նորեն»: ««Աբու-Լալայիս» ռուս և գերման թարգմանությունների մասին գրախոսներն ասացին,— նկատում էր նա,— որ *միայն* հայ մարդը կարող է այսքան սև հոռետես լինել» («Սովետական գրականություն», 1971, № 1, էջ 139):

Անսանձ բռնությունների ու կամայականությունների, ազգամիջյան բարբարոսական կոտորածների, մարդու օտարման ու քամահրանքի դեմ էր ծառանում Իսահակյանն իր պոեմով, ձգտելով մարդուն փրկել անլուր ստորացումից ու անարգանքից, հասարակական արդար կարգերի հաստատմամբ: Մեծ գրողն անկեղծ էր, երբ գրում էր.

*Իմ մեջ այրվում է մի անհագ կարոտ, կարեկից*
*մի սիրտ լացող հավիտյան...*

Ժամանակաշրջանը, հիրավի, անջնջելի դրոշմ էր դնում գրականության, արվեստի վրա: Իսահակյան-բանաստեղծի, այլև Սարյան-գեղանկարչի հայացքների, հոգեբանության ու արտահայտչական ողջ կոմպլեքսի վրա: Սարյանի *Հեքիաթներ ու երազներ* կտավների խաղաղ շարքը փոխարինվում էր մինչ այդ անհայտ և այնուհետև այլևս չկրկնվող բորենիներ, հովազներ, միայնակ մարդիկ ամայի անապատում ուղտով ճամփորդելիս խռովահույզ կտավներով: Ի՞նչը կարող էր առավել բնորոշ լինել, քան չարագուշակորեն ոռնացող բորենիները, որոնք բացառիկ ուժով խորհրդանշում էին ռեակցիայի ծանր մղձավանջը: Հեքիաթների ու երազների ջինջ կանվան քանդվում էր, ինչպես էին գալիս ռեալ իրականության խատաշունչ գույներն ու ձևերը: «1908 թվից,— իրավացի նկատում էր Սարյանը,— ես կանգնեցի ռեալիզմի ուղու վրա»:



Ռեակցիայի տարիները, ուրեմն, միայն նահանջի, տարրնթացության տարիներ չէին: Այդ շրջանում, իհարկե, գրողներից շատերն ապակողմնորոշվում էին, կանգնում ստեղծագործական փակուղու առաջ, հանդես գալիս «Հանգցնել կրակները և սուզվել խավարում» (Լեոնիդ Անդրեև) մռայլաշունչ կոչերով: Առաջավոր գրողները, սակայն, ինչպես և Իսահակյանը, յուրովի էր ծառանում ռեակցիայի դեմ, ձգտում ազատության: «...ազատությունը թող գահակալե աշխարհը հանուր» («Աբու-Լալա Մահարի»):

Ոմանց միայն անհատապաշտական թվացող «Աբու-Լալա Մահարի» պոեմը կամ ֆանտաստիկ, հեքիաթային ներկայացող Մ. Սարյանի կտավները, իր ժամանակաշրջանի իրապես բնորոշ արտացոլումներ էին: Դրանցում չկա ոչ մի ֆանտաստիկա, հեքիաթ: Չի կարելի տարակուսել, որ «Աբու-Լալա Մահարին» համատարած ռեակցիայի դեմ ուղղված մեծ ոգու ընդվզման ու ցասման գեղարվեստական հավաստի պատկերն է, գրական մոնումենտալ հուշարձան:

Թեև ռեակցիան, հայկական եղեռնը Իսահակյանի ստեղծագործության մեջ ներխուժում էին մռայլ գույներով ու պատկերներով, զգացնել տալիս մահվան ուրվականը, որը մերթ դառնում էր գերիշխող տրամադրություն՝ «Անանդան և մահը», «Ծի-Հուանգ-Տի Բողդիխանը», թեև հայրենի տունը՝ «ավար, ավեր» դարձած, հարուցում էր ծանրագին խոհեր («Արևն հոգուս մեջ՝ մի բուռն անյուն»), բնորոշը, սակայն, մնում է բանաստեղծի լավատեսությունը— սերն իբրև «ամենահաղթ դրոշ» («Աստարդան», 1910), մնում է հայրենիքի փրկության, հեղափոխության հաղթանակի խոր հավատը: «Եվ հավատում է ժողովուրդը,— գրում էր նա,— թե նորից պիտի ծածանվի իրավունքի և եղբայրության դրոշակը հայրենիքի այս թախծապատ լեռների և գլխիկոր կաղնիների վրա և պիտի դուրս ելնի գերեզմանից սիրելի և ազնավուր Ծաքրոն՝ նորից բռնելու հեղափոխության սրբազան դրոշակը...»:

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հեղափոխության շրջափուլում՝ 1917—1921 թվականներին, որ լի էր սխրանքներով ու հաղթանակներով, վճռվում էր նաև փոքր ժողովուրդների բախտը:

Հեղափոխության հե՞տ, թե՞ նրա դեմ: Հայ առաջավոր գրողները՝ Հովհ. Թումանյան, Ալ. Ծիրվանզադե, Հովհ. Հովհաննիսյան, Վ. Տերյան, հակադրվելով դաշնակների հակաժողովրդական, հակաբոլշևիկյան գործունեությանը, անվերապահ փարեցին Հոկտեմբերի դրոշին, հայ ժողովրդի ազգային վերածնության լենինյան դրոշին:

Թեև տարագիր, պաշտպանվելով ցարական բռնապետության հետապնդումներից, Իսահակյանը դարձյալ անվերապահ կողմնորոշվում էր դեպի Սովետական Ռուսաստանը: Իր 1918-ի նամակներից մեկում բանաստեղծն ավետում էր. «Սուրբ Սարգիսի պես հասավ հեղափոխությունը» (ԳԱԹ, Իսահակյանի ֆոնդ, № 71), մշակելով մի որոշակի համոզմունք. «...Հայաստանը և հայ ժողովուրդը,— 1921-ի հուլիսի 1-ին գրում էր նա Թումանյանին,— *կարող է ապրել Ռուսաստանի հետ կամ բնավ չի կարող ապրել*» (Ավ. Իսահակյան, Երկերի ժողովածու, հ. 1, Ե., 1973, էջ XVI):

Իսահակյանի այդ ժամանակաշրջանի ստեղծագործությունը նշանավորվեց մի շարք արժեքավոր գործերով, առանձնապես՝ մեծակտավ լեգենդներով ու բալլադներով, *Սասմա Մհեր* վիպերգով, *Լիլիթ* արձակ բանաստեղծությամբ:

Նրա մի շարք երկերում տիրական է հեղափոխության շունչը, արտահայտված մերթ անմիջականորեն, մերթ միջնորդաբար: Այսպես, մոր և որդու զրույցի միջոցով (*Ազատության զանգ*, 1920) բանաստեղծը, ասես, խորհրդանշում է հեղափոխության մեծ առաքելությունը, հայ ժողովրդի «հինքնուրույնանալու, ազգայնանալու» (Թումանյան) ռեալ հնարավորությունը:

Լավատեսությունն Իսահակյանի այդ ժամանակաշրջանի ստեղծագործության բնորոշ գիծն էր. «Մահը մեզ համար ժամանակավոր նիրհ է եղել»,— հավաստում էր բանաստեղծը իր արձակ պոեմներից մեկում («Հավերժություն», 1919), համոզված, որ մոտենում է հատուցման ժամը: «...մոտ է արդարության թագավորությունը,— գոչում է Իսահակյանի իմաստուն ծերունին, դիմելով մշակ-բանվորներին,— ուր զրկվածը ուրքի պիտի կանգնի և երկաթե խարազանը ձեռքին հատուցման

դատը պիտի տեսնի» («Քարերն են աղաղակում», 1921): Իսկ բանաստեղծություններից մեկում («Հայոց գեղջուկի ծավալուն արտեր», 1917, դեկտեմբերի 15), նա ուղղակի ազդարարում էր.

*Դրախտի փառքով պիտի հորդրա*
*Մեր ազատության ոսկի արշալույս:*

Իսահակյանի խոհերն ու զգացումները բացառապես վերաբերում էին հայրենի օջախին, մեր ժողովրդի ֆիզիկական գոյության պաշտպանությանը, քաղաքական ազատությանը: Նրա մեծությունը (ինչպես մեր առաջավոր դասականների) այն էր, որ կարողանում էր անվրեպ լսել պատմության ճշմարիտ ձայնը, իր ժողովրդի հարազատ ձայնը: Պատմական բաղձալի հաղթանակն անսքող խանդավառություն էր պատճառում բանաստեղծին, նրան զինում իր երբեմնի քաղաքական համախոհների՝ դաշնակների դեմ, նրանց դատապարտում պատմության անարգանքի սյունին: «Ելքը սա է,— գրում էր Իսահակյանը Ս. Վրացյանին ուղղած իր 1922-ի մայիսի 30-ի նամակում,— թողնել թշնամական ընթացքը, բոլշևիկների դեմ, աջակցել, ձուլվել, միանալ, աշխատել Ռուսիայի վերանորոգման. մեր գոյությունը հիմա կախված է *միայն* Ռուսիայի գոյությունից» (տե՛ս Ս. Վրացյան, *Հին թղթեր նոր պատմության համար*, Բեյրութ, 1962, էջ 358):

Ահա և Իսահակյանի *Հայաստանին* (1921) բանաստեղծությունը, որի չափատողերը լի են Հայաստանի ազատագրումն ու վերածնության հեռանկարն արտացոլող խանդաղատագին գովերգությամբ. «Նոր հույսերի, նոր երգերի երազաբույր ի՛մ Հայաստան», «Հրաշափառ քո Հարությամբ՝ նորամանուկ ի՛մ Հայաստան»:

Հոկտեմբերյան հզոր ճառագայթները թափանցում էին պատմության խորքերը նաև, մեր գրողներին տալիս անցյալի հոգևոր ժառանգությունը, ժողովրդական բանարվեստը նորովի հասկանալու և վերակերտելու համարձակություն: Այսպես ծնվեց «Սասմա Մհեր» վիպերգը՝ 1919-ին, որը պետք է համարել Իսահակյանի գաղափարա-գեղարվեստական ակնհայտ նվաճումը:

Վիպերգի մտահղացումը, որ սկսված էր 90-ական թթ., գեղարվեստական ձև է ստանում հեղափոխության պատմական իրադարձությունների թելադրությամբ միայն, բացահայտվում է Մհերի առեղծվածային կերպարը» (Իսահակյան) նաև:

Մհերի գործողություններն ամբողջովին ուղղված էին սոցիալական անարդարությունների դեմ, երկրի ներքին հարստահարիչների՝ սեպուհների ու իշխանների դեմ, ձգտելով աշխատավորության պատմական իրավունքները նվաճել զենքի ուժով:

*Ելնեմ աշխարք ողջ ավերեմ,*
*Ռամկության բերեմ,*
*Ռամկի իրավունք:*

Բանաստեղծը հմտորեն է օգտագործում ժողովրդական բանարվեստի զինանոցը, կերտում հերոսի գործողությունները մարմնավորող վառ պատկերներ, իմաստալից մակդիրներ, ժամանակաշրջանի կոլորիտն արտահայտող ուրույն լեզու և ոճ, ստեղծում հարուստ չափ ու ռիթմ (բացառապես նկատի ունենք վիպերգի առաջին տարբերակը, որ լույս է տեսել Վիեննայում, առանձին գրքով): Մհերը բանաստեղծին ներկայանում է մեկ իբրև «մթար ու մլար», երբ հոգին խռովահույզ է, մտորում է աշխարհի անարդարությունների վերացման, ռամկի իրավունքը նվաճելու մասին, մեկ «բո՜ց ու բորբո՜ք», «ծով մըրըրկած», երբ ծառս է լինում սոցիալական անարդարությունների դեմ, բռնկում անկասելի ցասումով. վիպերգի եզրափակիչ մասում Մհերը՝ ժողովրդի իմաստուն հերոսը, համարվում է *«անմահ, անմեռ»*:

Կերտելով Փոքր Մհերի՝ Սասունցի Դավթի որդու, դյուցազնական կերպարը, Իսահակյան-բանաստեղծը նրա մեջ խտացնում է իր ժողովրդի ազատատենչ ոգին, դարերով մշակված կենսափիլիսոփայությունը: «...Վեպը բարձրացնող այս երկու սյուները՝ Դավիթը և Փոքր Մհերը,— նկատում էր Դ. Դեմիրճյանը,— խոշորացնում են վեպի քաղաքական նշանակությունը, լայնացնում են նրա դիապազոնը, խորացնում են նրա պատկերացման գույները, ուժեղացնում կերպարները, վեպին տալիս են մեծ սուգգեստիվ ուժ: Եվ ապա սա դարձնում է վեպը *համաշխարհային* սեփականություն...» (Երկերի ժողովածու, հ. 8, Ե., 1963, էջ 162):



Բացահայտելով Մհերի սոցիալական էությունը, Իսահակյանը, արդարև, հասնում է գեղարվեստական մեծ ընդհանրացման— Փոքր Մհերին ներկայացնում իբրև մարդկության վսեմ իդեալների արտահայտիչ: «Մհերի մեջ,— գրում էր բանաստեղծը,— հայ ժողովուրդը դրել է իր բովանդակ հոգին... իր պատմության փիլիսոփայությունը, իր անշեջ ու աներկնչելի հավատը լավագույն ապագայի համար... Ստեղծելով Մհերի վսեմ կերպարը՝ հայ էպոսը ազգային նեղ շրջանակից ելնելով *ստանում է համամարդկային որակ և դառնում է աշխարհահեղաշրջման և աշխարհավերակառուցման պատգամախոս*» (Ընտիր երկեր, Մ., 1948, էջ 404):

Լինելով սոցիալիստական հեղափոխության գեղարվեստական յուրակերպ արտացոլում, «Սասմա Մհեր» վիպերգը Իսահակյանի պոեզիայի զարգացման նոր շրջափուլ է հատկանշում և, իր վերջնաձևով, ներդրվում սովետական բազմազգ գրականության ոսկե ֆոնդը:

ՇՈՒՐՋ ՔԱՌՈՐԴ ԴԱՐ Իսահակյանն ապրեց Սովետական Հայաստանում, իր արտասահմանյան տարիները համարելով *«մարմարյա գերեզման»*: Ապրեց, ստեղծագործեց իր հարազատ ժողովրդի հետ, դարձավ ազգային մշակույթի մեծագույն շինարարներից մեկը:

Նրա վերադարձը հայրենիք պատմականորեն հիմնավորված էր: Հայրենիքը նրան ձգում էր մագնիսական վիթխարի ուժով, ավելի ճիշտ՝ հայրենիքը նրա մեջ էր. «Ո՞ւր պիտի փախչեի ես ինձանից» (Իսահակյան): Նա ձգտում էր իր հարազատ ժողովրդին, ժողովուրդը՝ իր մեծ զավակին: Բանաստեղծը տարիների պապակ կարոտով փարվեց «հայրենի ծխին»:

*Ոչինչ չեմ տենչում այս ծխից ավել,*
*Ոչինչ, դատարկված այս մեր աշխարհում,*
*Ո՛չ կին երազած, պանծալի անուն,*
*Ո՛չ գանձ աշխարհի— այս ծխից ավել:*

Իսահակյանը տեսնում էր մոխիրների տակից հառնող վերածնված Հայաստանը՝ «համամարդկային գաղափարներով, համաշխարհային բովանդակությամբ և ազգային ոճով ու դեմքով»:

Բանաստեղծի մոլորությունները՝ գրական-քաղաքական-ստեղծագործական, եղել են ակնհայտ, բայց վաղանցիկ: Հայրենիքի, հայ ժողովրդի նկատմամբ ունեցած սիրո խոր ու օրգանական զգացողությունը միշտ հուշել է նրան ապրել ու ստեղծագործել հարազատ ժողովրդի վերածնվող հայրենիքում:

Տակավին 1937-ի քաղաքական լարված մթնոլորտում Իսահակյան-բանաստեղծը համարձակ ուրվագծում էր իր անցած ծանր, բարդ ու հակասական ուղին, ասես իր ժողովրդին հրապարակային հաշվետվություն էր տալիս: «Եղել եմ տոլստոյական, նիցշեական,— ասում էր նա,— Գերմանիայում ուսանող ժամանակ՝ սոցիալ-դեմոկրատ: Հուսահատված դարձել եմ անիշխանական, պեսիմիստ: Տարվել եմ Բուդդայով: Ոգևորվել եմ հայկական մարտական ազգայնությամբ, դաշնակցական ո՛չ երկրորդական գործիչ՝ աշխատել եմ անձնվիրաբար, բանտեր եմ նստել, աքսորվել, փախել հայրենիքից»: Այնուհետև. «Ըմբոստացել եմ կապիտալիզմի դեմ, հասարակության դեմ, ամեն ինչի դեմ: Եվ վերջ ի վերջո, երկար խորհելուց, կշռելուց, դատելուց հետո, վերստին եկել-կանգնել եմ *սոցիալիզմի* վրա, և տարիներ են անցել, որ կանգնել եմ այդ *փրկության լաստի* վրա» (Երկեր, հ. 4, Ե., 1959, էջ 390—391):

Անդրադառնալով մեծ եղեռնի սոսկալի հետևանքներին՝ վարպետը, տակավին 1922 թ., մհերյան ցասումով գրել է, թե ինքը միշտ ատել է Անտանտին ու նրանց խարդախ դիվանագիտությունը, և «...այս տեսակետից ես դաշնակցությունը գտնում եմ *հանցավոր, տղայամիտ* և *տհաս, ենթակա բուրժուազիայի* և ամբոխի թելադրություններին»: «Դաշնակցության շեֆերը... քիչ բացառությամբ՝ տգետ են...»: Եվ, ահա, դատապարտելով դաշնակցության քաղաքական կուրսը ազգային ազատագրական շարժման ոլորտում, նա զայրագին շեշտում է. «...դաշնակցության ղեկավարները (քիչ բացառությամբ) *ավանտյուրիստներ են*»:

Այն խոր և ճշմարտացի համոզմամբ վարպետը վերածնվող հայրենիք եկավ՝ ակտիվ մասնակցելու իր ժողովրդի նորոգ կյանքի արբեցնող վերընթացին, որին այնուհետև նա նվիրաբերեց իր ողջ կյանքը՝ իբրև ստեղծագործող, գրական-հասարակական գործիչ, իբրև ՀԳՄ նախագահ, ՀԳԱ ակադեմիկոս: «Իմաստություն ճառագայթող» (Ստ. Զորյան) նրա աչքերն անվրեպ տեսնում էին մեր կյանքի, հասարակական զարգացման արմատական տեղաշարժերը. նա դարձավ ազգային-սոցիալիստական մշակույթի, ազգային-սոցիալիստական գրականության, արվեստի ձևավորման ու զարգացման գործի ակտիվ, խանդավառ մասնակիցը: Նա համոզված ու կրքոտ պայքարում էր գրական մոլորությունների ու շեղումների դեմ, գրականության մեջ դրսևորվող ծեքծեքումների, մոդեռնիստական այլազան դրսևորումների դեմ: Գրական-գրականագիտական իր ծանրակշիռ հոդվածներով, գրախոսություններով ու ելույթներով, իր պրոբլեմատիկ հարցադրումներով, սրտաբուխ ու լայնախոհ հուշագրումներով, ֆաշիզմի դեմ ուղղած ցասումնալից հոդվածներով, բանաստեղծություններով, իր իսկ ներկայությամբ ու կենդանի զրույցներով, իր «հին» ու նոր ստեղծագործությամբ մոգական ազդեցություն էր գործում մեր մշակույթի, մեր գրականության, արվեստի, մեր սերնդի հոգևոր զարգացման վրա: Իսահակյան-բանաստեղծը կրքոտ պաշտպանում էր պուշկինյան ու գորկիական, աբովյանական ու թումանյանական ազգային ավանդները, աջից ու ձախից ունենալով այնպիսի լավագույն զինակիցներ, ինչպիսիք էին՝ Մարտիրոս Սարյանը, Դերենիկ Դեմիրճյանը, Ստեփան Զորյանը, Եղիշե Չարենցը, Ակսել Բակունցը:

Նա կրքոտ մարտնչում էր գրականության, արվեստի փողովրդայնության համար, ազգային արվեստի զարգացման ու հարստացման համար, անդուլ հետևելով գրական նոր սերնդի գրական-գաղափարական զարգացմանը, ազգային ժողովրդական արվեստի ստեղծման ծավալուն պրոցեսին, այն խոր համոզվածությամբ, որ յուրաքանչյուր ստեղծագործական երկ «պետք է ծայրեծայր թափանցված ու ողողված լինի մի մեծ գաղափարով, ինչպես ծովը աղով, և կամ գաղափարը նրա վրա պիտի սավառնի, ինչպես արևը երկնքի վրա» (Ավ. Իսահակյան, Արձակ, Ե., 1973, էջ 4): Նա ուներ այն խորին համոզումը, որ փոքր ազգերը ևս կարող են ստեղծել արվեստի մնայուն արժեքներ, ազգային կյանքի բացահայտումով ստեղծել համամարդկային մեծ գաղափարներով տոգորված կենսունակ գրականություն, ինչպես, ասենք, Գ. Սունդուկյանի դրամատուրգիան, Ալ. Շիրվանզադեի արձակը, Հովհ. Թումանյանի և իր իսկ՝ Ավ. Իսահակյանի պոեզիան:

Ընդդեմ արվեստի «կատարյալ անկախության», տեղայնության, «հայրենասիրական սվսվոցների» (Տերյան), անձի ու անհատի բացառիկության, սուբյեկտիվ-իդեալիստական հայացքների, Իսահակյանը բարձր էր գնահատում այլազգի ժողովուրդների գրականությունը՝ Պուշկինի, Լերմոնտովի, Գորկու արվեստը, որոնց ուժը ազգային կյանքի խոր զգացողության և համամարդկային մեծ գաղափարների մեջ է: Նա գտնում էր, որ մարդու հանդեպ ունեցած մեծ, անհուն սերն էր, որ Գորկուն մղեց դեպի պրոլետարիատը, դեպի պրոլետարական-հեղափոխական վճռական ճակատամարտերը: «Այս պատվանդանի վրա կանգնելով,— գրում էր Իսահակյանը,— բարձրացավ նա և դարձավ պրոլետարական գրականության հիմնադիրը, համաշխարհային պրոլետարիատի տանջանքների, պայքարի երգիչը, սոցիալիզմի մունետիկը» (Երկեր, հ. 4, Ե., 1959, էջ 192):

Կենսական հյութեր քաղելով այլազգի արվեստագետ հանճարներից, Իսահակյանը, սակայն, իր ստեղծագործությունն ամբողջովին հիմնում էր ազգային կյանքի վրա, ազգային մշակույթի ինքնության վրա, ճեղքելով տեղայնության պատնեշները: Պետք է շարունակել,— գրում էր նա իր նամակներից մեկում,— «ազգային-ինքնատիպ թեմը, մեր ինքնուրույն աշխարհազգացումը և աշխարհապատկերացումը» (տե՛ս «Սովետական գրականություն», 1971, № 1, էջ 138): Պետք է պահպանել ազգային գրականության ինքնությունը, ազգային գույներն ու երանգները, ազգայինի ողջ նկարագիրը՝ ոճը— «սեփական-անհատական ըմբռնումն ու առարկայացումը աշխարհի, նրա իրերի և խորհուրդների», համոզված, որ «ոճը ազգի նկարագիրն է», որ «ոճ ունեցող ազգերն ապրում և չեն ջնջվում ոչ ջարդերով, ոչ հրով ու սրով» (տե՛ս նույն տեղը, էջ 138—139):



ԻՍԱՀԱԿՅԱՆԻ ԽՈՍՔԸ՝ գեղարվեստական, թե գիտական, կապվում էր մեծ գիտելիքների ու կենսափորձի, այլազան ժողովուրդների բանահյուսության՝ էպոսի, առասպելի, հեքիաթի, բալլադի, առակի, առածի, զրույցի, ավանդապատումի հետ, ժողովրդական պատումներ, որոնք ունեն պատմական-կենսական-հոգեբանական մեծ խորք:

Բանաստեղծի գաղափարական-գեղագիտական իդեալը մարմնավորվում էր պատկերավորման և՛ ռեալիստական, և՛ պայմանական հարուստ ձևերի մեջ:

Բոլոր դեպքերում բանաստեղծը ձգտում էր ստեղծագործական երկն ազատել ամեն տեսակ մթամածությունից ու անորոշությունից, արտահայտչական ողջ կոմպլեքսի միջոցով դրսևորել առարկայի կամ երևույթի բնորոշ առանձնահատկությունը, ինչպես ինքն է ասում՝ «ի հայտ բերել իրերի էությունը»: «Ինձ համար,— գրում էր նա,— Գյոթեի „über qipfeln, ist Ruh„-ն ամենաթանկ գոհարն է տիեզերական գրականության... Եվ դա իմ իդեալն է, կաղապարը... պարզ, անպաճույճ, նաիվ, բայց խորն ու զգացած...»:

Գեղագիտական այդ նվիրական սկզբունքն առաջնորդեց Իսահակյանին ստեղծագործական ողջ կյանքում՝ և՛ երիտասարդ, և՛ ծերունական իմաստնացած տարիներին. հենց 1940—50-ական թվականներին երիտասարդական ավյունով նա կերտեց «Բինգյոլ», «Ռազմակոչ» (1941), «Ա՜խ, ինչքա՜ն, ինչքա՜ն կուզեի լինել զինվոր հասարակ...» (1955) պոետիկական արվեստի իր գլուխգործոցները:

Ամբողջ էությամբ, գաղափարական-գեղարվեստական մտածողությամբ, գեղարվեստական-փիլիսոփայական հայացքներով մեծ Իսահակյանը եկավ դեպի սոցիալիստական հասարակություն, հանգեց գիտական սոցիալիզմի մարքս-լենինյան գաղափարախոսությանը, նրա մեջ տեսավ իր վսեմ իդեալների մարմնավորումը, ողջ մարդկության փրկությունն ու պայծառ ապագան:

Այդ բարձունքներից էր մեծ պոետը գնահատում գեղարվեստական երկը, այդ բարձունքներից էր նա գրական սերնդին ավանդում. «Երիտասա՛րդ ընկերներ, ձեր ձեռքը տված է մի դյութական միջոց ստեղծագործելու համար— դա սոցիալիստական ռեալիզմն է: Իմ կարծիքով այս գրական ամենակատարյալ ձևն է... դիալեկտիկական, համադրական ռեալիզմը, որի մեջ խտացած են բոլոր ժանրերի, գրական դպրոցների լավագույն հատկանիշները» (Երկեր, հ. չորրորդ, Ե., 1959, էջ 394—395):

Այդ բարձունքներից էր մեծ վարպետը իր ծննդյան 65-ամյակին ազդարարում. «Սիրեցե՛ք... և գործադրե՛ք կյանքում:— Հայրենիք, մայրենի լեզու, ժողովուրդների բարեկամություն, ինտերնացիոնալիզմ, կոմունիզմ»:

Հ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

Ճապոնիայի դեմ տարած հաղթանակի 30-ամյակի առթիվ

# ԼԵՌՆԵՐՈՎ ՈՒ ՏԱՅԳԱՅՈՎ

**Ա. ԲԵԼՈԲՈՐՈԴՈՎ**
Սովետական Միության կրկնակի հերոս,
բանակի գեներալ

**1945** ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 24-ԻՆ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ կայացած Հաղթանակի շքերթից հետո հույս ունեի գնալ արձակուրդ: Պատերազմի չորս տարիների ընթացքում բավական հոգնել էի, ուզում էի հանգստանալ: Բայց ստացվեց այլ կերպ: Ինձ կանչեց սովետական բանակի գլխավոր շտաբի այն ժամանակվա պետ Ա. Ի. Անտոնովը:

— Գիտեմ, որ մտադիր եք արձակուրդ գնալ, բայց հարկ կլինի հետաձգել ու մեկնել Հեռավոր Արևելք,— ասաց նա ժպտալով: Ապա անցնելով պաշտոնական տոնի, շարունակեց:— Դուք նշանակված եք 1-ին Հեռավորարևելյան ռազմաճակատի 1-ին կարմրադրոշ բանակի հրամանատար:

1941 թվականի ապրիլի 13-ին ՍՍՀՄ-ի ու Ճապոնիայի միջև ստորագրվել էր չեզոքության պակտ: Բայց արդեն 1941 թվականի հուլիսի 2-ին Ճապոնիայի քաղաքական ու զինվորական ղեկավար գործիչների գաղտնի խորհրդակցությունում ընդունվեց «Ճապոնական կայսրության պետական քաղաքականության ծրագիրը՝ իրադրության փոփոխման կապակցությամբ»: Այս փաստաթղթում մասնավորապես ասված էր. «Թեև գերմանա-սովետական պատերազմի նկատմամբ մեր վերաբերմունքը որոշվում է Հռոմ—Բեռլին—Տոկիո առանցքի ոգով, մենք որոշ ժամանակ չենք միջամտի դրան, բայց սեփական նախաձեռնությամբ միջոցներ կձեռնարկենք գաղտնի զինվելով՝ Սովետական Միության դեմ պատերազմելու համար, և, եթե գերմանա-սովետական պատերազմը ունենա Ճապոնիայի համար բարենպաստ շրջադարձ, մենք զենքի կդիմենք...»: Մշակվել էր ՍՍՀՄ-ի դեմ պատերազմի հատուկ պլան:

Ստացվում է, որ չեզոքության պակտը ճապոնական զինվորականության համար եղել է լոկ թղթի կտոր: 1942 թվականի ամռանը, երբ հիտլերյան վերմախտը սրընթաց նետվում էր դեպի Վոլգա և Կովկաս, վտանգի տակ էր մեր Հեռավոր Արևելքը: Բայց Ստալինգրադի մոտ ֆաշիստների ջախջախումը սովետական բանակի կողմից սառեցրեց ճապոնական զինվորականների խանդավառությունը: Սակայն դրանից հետո էլ նրանք օրինազանցորեն գերում ու ջրասույզ էին անում սովետական նավերը, հաճախակի խախտում սահմանը և գնդակոծում սովետական տերիտորիան: Դա ստիպում էր մեզ հիտլերյան զավթիչների դեմ մղված ողջ պատերազմի ընթացքում հեռավորարևելյան սահմանի մոտ պահել առնվազն 40 դիվիզիա, իսկ դրանց օգտագործումը արևմտյան ռազմաճակատներում կարագացներ հաղթանակը:

Սովետական կառավարությունը 1945 թվականի փետրվարին Յալթայի կոնֆերանսում դաշնակիցներին պարտավորեցրեց ճապոնական միլիտարիստների դեմ պատերազմական գործողություններ սկսել ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից երկու-երեք ամիս հետո և այդ պարտավորությունը հաստատեց 1945 թվականի հուլիսին՝ Պոտսդամի կոնֆերանսում: Հավատարմությունը դաշնակցային պարտքին ճշտորեն պահպանվեց:



Այդ ժամանակ Ճապոնիայի զինված ուժերում կար ավելի քան 7 միլիոն մարդ. ավիացիան ու ռազմական նավատորմը ունեին 10 հազարից ավելի ինքնաթիռ և գրեթե 500 մարտական նավ: Ամենահզոր խմբավորումը Քվանտունյան բանակն էր, որը տեղաբաշխված էր Մանջուրիայի և Կորեայի տերիտորիայում: Հենց այդ բանակի դեմ էլ գործելու էինք մենք:

Մեր զորքերը պատերազմական գործողությունները սկսեցին օգոստոսի 9-ին: Հաջորդ օրը իմպերիալիստական Ճապոնիային պատերազմ հայտարարեց նաև Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը:

Դրան նախորդել էր վիթխարի նախապատրաստական աշխատանք: Անդրսիբիրյան երկաթուղային մայրուղով մարտական մեր փորձառու զորքերի փոխադրումը արևմուտքից Հեռավոր Արևելք՝ 9—11 հազար կիլոմետր՝ իր մասշտաբներով մի չտեսնված գործողություն էր. երկու ամսում՝ 136 հազար վագոն զորքերով ու ռազմական գույքով: Ըստ որում, այդ բանը անհրաժեշտ էր կատարել խիստ գաղտնի:

Այդպիսով, կամպանիայի սկզբին մենք արևելքում ունեինք 80 դիվիզիա և 30 առանձին բրիգադ, ավելի քան 26 հազար հրանոթ ու ականանետ, մոտ 5.500 տանկ և ինքնագնաց հրետանային սարք, ավելի քան 3.800 մարտական ինքնաթիռ: Անձնակազմի ընդհանուր թվաքանակը անցնում էր մեկ և կես միլիոն մարդուց: Այս բոլոր ուժերը բաշխված էին ստեղծված 1-ին Հեռավորարևելյան, II Հեռավորարևելյան և Անդրբայկալյան ռազմաճակատների միջև: Գործողություններին մասնակից էին դարձվում նաև Խաղաղօվկիանոսյան նավատորմը, որի հրամանատարն էր ծովակալ Ի. Ս. Յումաշևը, և Ամուրյան Կարմրադրոշ նավատորմիկը՝ փոխ-ծովակալ Ն. Վ. Անտոնովի հրամանատարությամբ:

Քանի որ պատերազմական թատերաբեմը գտնվում էր զորակայանից անչափ հեռու, մարտական գործողությունները կոորդինացնելու համար ստեղծվել էր սովետական զորքերի գլխավոր հրամանատարություն Հեռավոր Արևելքում: Գլխավոր հրամանատար էր նշանակվել Սովետական Միության մարշալ Ա. Մ. Վասիլևսկին, ռազմական խորհրդի անդամ՝ գեներալ-գնդապետ Ի. Վ. Շիկինը, շտաբի պետ՝ գեներալ-գնդապետ Ս. Պ. Իվանովը:

Սովետական զորքերի վճռական ու հուժկու հարձակումը այնքան շշմեցուցիչ էր, որ Ճապոնիայի այն ժամանակվա պրեմիեր-մինիստր Սուձուկին պատերազմը ղեկավարող բարձրագույն խորհրդի նիստում հայտարարեց. «Այն, որ այսօր առավոտյան պատերազմի մեջ մտավ Սովետական Միությունը, մեզ վերջնականապես դնում է անելանելի դրության մեջ և անհնարին դարձնում պատերազմի շարունակումը»:

Մեր ստրատեգիական հարձակողական գործողության նպատակն է՝ միաժամանակ հասցնել երկու հիմնական հարված՝ ՄԺՀ-ի և Սովետական Պրիմորիեի տերիտորիայից ու մի շարք օժանդակ հարվածներ այնպիսի ուղղություններով, որոնք միանալու էին Մանջուրիայի կենտրոնում:

Սկսված հորդառատ անձրևները և մինչև 30 աստիճանի շոգը է՛լ ավելի էին բարդացրել մեր զորքերի գործողությունները: Այս բոլոր դժվարությունները հաղթահարելու և հաղթելու համար պահանջվում էր ուժերի մեծ լարում, սովետական մարտիկների բարձր վարպետություն, վճռականություն և քաջություն, սպաների և զորավարների վարպետություն: Հիշում եմ մեր կողմից գերեվարված ճապոնական 5-րդ բանակի հրամանատար, գեներալ Նորիցունե Սիմիձուի խոսքերը.

— Մենք չէինք սպասում ռուսների այդպիսի կայծակնային առաջխաղացում և չէինք հասցրել ինչպես հարկն է կազմակերպել պաշտպանությունը: Չէինք ենթադրում, թե ռուսական բանակը կշարժվի տայգայով: Մեզ համար միանգամայն անսպասելի էր նման ուժի հայտնվելը դժվարանցանելի տեղերից:

1945 ԹՎԱԿԱՆԻ ՕԳՈՍՏՈՍԻ 9-Ի ԳԻՇԵՐԸ 1-ին Կարմրադրոշ բանակի զորքերը, որի հրամանատարությունը հանձնարարված էր ինձ, Տուրի Ռոգ-Սիյանխե կիրճի հատվածում դուրս եկան պետական սահմանը: Ժամը մեկին

— Գուցե ցանկանո՞ւմ եք մեկնել բանակ, հրաժեշտ տալ ձեր ենթականերին։— Ես ուզում էի իմանալ, թե այդ առաջարկությանն ինչպես կարձագանքեր գեներալը։

— Ո՛չ, հարկավոր չէ,— բացականչեց նա։

Այսպես, կապիտուլյացիայի ենթարկվեց 5-րդ ճապոնական բանակը, որը մտնում էր Քվանտունյանի մեջ։ Որքան էլ լավ նախապատրաստած լինեին այն, Քվանտունյան բանակը չկարողացավ դիմանալ մեր երեք ռազմաճակատների, Խաղաղօվկիանոսյան նավատորմի, Ամուրի Կարմրադրոշ նավատորմիկի ծովայինների և ՄԺՀ-ի զորքերի վճռական գործողություններին։

Ուզում եմ նշել, թե Հյուսիս-Արևելյան Չինաստանի բնակիչները ինչպիսի՜ խանդավառությամբ դիմավորեցին մեր զորքերին։ Նրանք ուրախությունից լաց էին լինում, ողջունելով մեզ, ծաղիկներ էին շաղ տալիս, հյուրասիրում այն ամենով, ինչ ունեին... Նրանք օգնում էին որսալու ճապոնական կամիկաձեներին, որոնք հետամտում էին մեր սպաներին, տանկերին ու հրանոթներին, ճանապարհներն էին վերականգնում մեզ համար, իսկ երբեմն էլ անգամ մասնակցում էին ճապոնացիների դեմ մղվող փողոցային մարտերին։

Իսկ հետո շքերթ տեղի ունեցավ Խարբինում։ Ինձ հանձնարարվեց ընդունել շքերթը, իսկ 1-ին Կարմրադրոշ բանակի հրետանու հրամանատար, գեներալ-լեյտենանտ Կ. Պ. Կազակովին՝ լինել շքերթի հրամանատար։

Թվում էր, թե ամբողջ 700-հազարանոց Խարբինը դուրս է եկել փողոցները։ Չինացիները ուրախությամբ ողջունում էին սովետական բանակի մարտիկներին, ծաղիկներ նետում զորասյուներին։

Պատերազմից հետո, 1947-ից մինչև 1953 թվականը ես եղել եմ Պորտ-Արտուրում տեղաբաշխված զորքերի հրամանատարը։ Այնտեղ հարկ էր լինում լուծել ամենաբազմապիսի խնդիրներ, զբաղվել ոչ միայն մարտական ուսուցման և մարտական պատրաստության, այլև գյուղատնտեսության, արդյունաբերության հարցերով, միլիոնանոց չին բնակչությանը աշխատանքով, սննդամթերքներով, անհրաժեշտ ամեն բանով ապահովելու հարցերով։ Չանկայշիականները հոգ չէին տանում Պորտ-Արտուրի ու նրա շրջանի բնակիչների մասին։ Իրադրությունը լավացավ թերակղզում, երբ այդ շրջանը մտավ ՉԺՀ-ի կազմի մեջ։

Երեք անգամ ես հանդիպել եմ Չժոու Էն-լային։ Ամեն անգամ նա խնդրում էր հանդիպումներ կազմակերպել սովետական սպաների հետ՝ երախտագիտության և շնորհակալության զգացմունքներն արտահայտելու համար։ «Մեր բարեկամությունն այնպիսին է,— ասում էր Չժոու Էն-լայը,— որ ոչ ոք այն չի կարող ջախջախել։ Այն արյունով է զոդված։ Մենք միշտ հիշելու ենք սովետական ժողովրդին։ Դուք աշխարհը փրկեցիք ֆաշիզմից, դուք ջախջախեցիք ճապոնական միլիտարիզմը»։

Այժմ Չինաստանում մոռացել են այդ խոսքերն ու խոստումները...

Ամփոփենք։ Քվանտունյան բանակի դիմադրությունը փաստորեն ընկճվեց 10 օրում։ Օգոստոսի 19-ին ինքնաթիռով Սովետական Միության մարշալ Մերեցկովի զորակայանը եկան Քվանտունյան բանակի շտաբի պետ, գեներալ-լեյտենանտ Խատան, Խարբինում ճապոնական հյուպատոս Միկայավան և ճապոնական շտաբի մի խումբ ավագ սպաներ։ Հանդիպումը տեղի ունեցավ անտառային մի տնակում՝ սովետա-մանջուրական սահմանի մոտ։ Ճապոնացիները հայտարարեցին, որ համաձայն են անվերապահ կապիտուլյացիայի։ Մինչև օգոստոսի 29-ը սովետական մարտիկները գերի վերցրին հակառակորդի 513 հազար զինվոր ու սպա, այդ թվում՝ 81 գեներալ։

Իսկ 1945 թվականի սեպտեմբերի 2-ին Ճապոնիայի ներկայացուցիչները ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը։ Ահա թե այդ կապակցությամբ ի՛նչ հայտարարեց Չինաստանում ԱՄՆ-ի ռազմա-օդային ուժերի հրամանատար, գեներալ Կ. Չենոլտը. «Այն, որ Սովետական Միությունը պատերազմի մեջ մտավ ընդդեմ Ճապոնիայի, մի վճռական գործոն էր, որն արագացրեց պատերազմի ավարտը Խաղաղ օվկիանոսում, մի բան, որ տեղի կունենար անգամ այն դեպքում, եթե կիրառված չլինեին ատոմային ռումբերը»։

«ՆԵԴԵԼՅԱ» շաբաթաթերթ, № 35, 1975։

# ԸՆԴԴԵՄ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ

## «ՊՈՍՏԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ» ԿՈՆՑԵՊՑԻԱՅԻ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ

ԱՇԽԱՐՀՈՒՄ ՕՐԵՑՕՐ ԱՃՈՒՄ է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ձգողական ուժը։ Հասարակական-տնտեսական երկու հակադիր սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում բացահայտ հակակոմունիզմը մշտապես հանդիպում է կապիտալիստական երկրների աշխատավորների լուրջ դիմադրությանը։ Զարգացող երկրներում ավելի ու ավելի լայնորեն են ծավալվում ազգային և ազատագրական շարժումները։

Եթե նախկինում իմպերիալիզմի գաղափարախոսները բավարարվում էին զուտ պրագմատիստական կոնցեպցիաներով, ապա այժմ, ժողովրդական զանգվածների ուշադրությունը կապիտալիզմի անբուժելի արատներից շեղելու նպատակով, փնտրում են նոր մեթոդներ ու եղանակներ։ Բուրժուական տնտեսագետները ևս փորձում են հարմարվել պատմական նոր պայմաններին, դիմում մարքսիզմ-լենինիզմի դեմ պայքարի առավել քողարկված մեթոդների օգտագործման։ Մոնոպոլիստական կապիտալի հազարավոր վարձու գաղափարախոսներ տքնաջան փորձեր են կատարում հակակոմունիզմի «հրաշագործ բալասան» գտնելու համար։ Միևնույն ժամանակ իմպերիալիզմը տենդագին կերպով համախոհներ է փնտրում կոմունիստական և բանվորական կուսակցությունների շարքերում։ Աջ և «ձախ» ռևիզիոնիստների հետ միասին այն ձգտում է մարքսիզմ-լենինիզմի դեմ կազմակերպել գաղափարական յուրատեսակ կարտել։

Իմպերիալիզմը պաշտպանական դիրքեր է որոնում։ Հաճախ դա խոստովանում են նաև իրենք՝ բուրժուազիայի գաղափարախոսները։ Այսպես, Լոնդոնի «Թայմս» թերթի 1970 թվականի մայիսի 9-ի համարում կարդում ենք. մոտիկ ապագայում կապիտալիզմը կկործանվի, եթե նա «չկարողանա լուծել իր հակասությունները և արմատապես վերակառուցվել հասարակական ու տնտեսական նոր պայմաններին համապատասխան»։

Բուրժուական քաղաքատնտեսությունը զուրկ է ընդհանուր, միասնական մեթոդաբանական հիմքից։ Այդ պատճառով էլ բուրժուական տնտեսագետների առաջ քաշած ջատագովական կոնցեպցիաները գործնականում արագորեն հերքվում են՝ առանց որևէ էական հետք թողնելու հասարակական գիտակցության մեջ։ Այդպիսի նորագույն կոնցեպցիաներից մեկն էլ «պոստինդուստրիալ («հետինդուստրիալ») հասարակության» տեսությունն է, որը ամայի տեղում չի ծագել։

Հայտնի է, որ «ինդուստրիալ հասարակություն» արտահայտությունն առաջին անգամ օգտագործել է ֆրանսիական ուտոպիստ-սոցիալիստ Սեն-Սիմոնը։ Նա կապիտալիզմին հակադրում էր հասարակական նոր կարգ, որն անվանում էր ինդուստրիալ սիստեմ։ Ըստ Սեն-Սիմոնի, ապագա հասարակարգի հիմքը պետք է լինի խոշոր արդյունաբերությունը՝ ինդուստրիան, որը պլանայ-

հնարավորություններ են ստեղծում գիտատեխնիկական առաջընթացի ուղիով զարգացման տեմպերն արագացնելու համար։

Բուրժուական տնտեսագետները ժխտում են արտադրողական ուժերը հեղափոխական ճանապարհով կապիտալիստական կապանքներից ձերբազատելու անհրաժեշտությունը։ Նրանք հայտարարում են, թե տեխնիկական առաջընթացը կապիտալիզմին էվոլյուցիոն ուղիով կհասցնի այնպիսի հասարակարգի, որտեղ այլևս խոսք չի կարող լինել աշխարհի սոցիալիստական վերափոխման մասին։

Կ. ՄԱՐՔՍՆ ԸՆԴԳԾՈՒՄ ԷՐ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ կողմից կապիտալիզմի նկատմամբ ցուցաբերվող երկու գլխավոր ավանդական մոտեցում՝ լիբերալ ջատագովություն և ռոմանտիկական քննադատություն։ Եթե դրանցից առաջինը կապիտալիզմի ուղղակի ջատագովություն է, ապա երկրորդը՝ անուղղակի գովերգում։ Արդի դարաշրջանում այդ երկու ավանդական մոտեցումները փաստորեն միահյուսվում են։ «Պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանները գտնում են, որ գիտատեխնիկական հեղափոխությունն ընդունակ է ոչ միայն վերացնելու կապիտալիզմի հակասությունները, այլև դառնալու հասարակության կառուցվածքային տեղաշարժերի արարիչ, որ իբր ներկայիս կապիտալիզմը լրիվ կորցրել է այն բացասական գծերը, որոնք նրան հատուկ էին սրանից մի քանի տասնամյակ առաջ։ Կրկնելով իրենց նախորդներին, նրանք պնդում են, թե «պոստինդուստրիալ հասարակության» պայմաններում բուրժուական կարգը դառնում է կազմակերպված ու պլանային։ Ամերիկյան պրոֆեսորներ Լ. Լորվինը, Ա. Հանսենը, Պ. Սամուելսոնը դեռևս մի քանի տարի առաջ հայտարարում էին, թե կապիտալիստական տնտեսության տարերայնությունն ու անարխիան, տնտեսական ճգնաժամերը արդյունք են անջատ-անջատ կապիտալիստների գործունեության, թե առանձին մասնավոր սեփականատերերի փոխարեն հզոր մոնոպոլիաների հանդես գալու շնորհիվ ստեղծվել են անարխիան ու մրցակցությունը վերացնելու պայմաններ։ Կապիտալիստական տնտեսության «պլանային», «կազմակերպված» բնույթը բուրժուական տնտեսագետները համարում են պետության միջամտության արդյունք։

Կյանքը ցույց է տալիս, որ «պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանների գուշակությունները հիմքից զուրկ են։ Միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրանքը 1974 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ նվազել է 10 տոկոսով։ Ընդ որում, արտադրանքի թողարկումն առավել անկման է հասել այնպիսի առաջատար իմպերիալիստական տերություններում, ինչպիսիք են ԱՄՆ-ը, Ճապոնիան և ԳՖՀ-ը։ Դրա հետ միաժամանակ, խորանում է վալյուտա-ֆինանսական ճգնաժամը, անզուսպ աճում թանկությունը, իջնում աշխատավորների կենսամակարդակը։

Կապիտալի աշխարհում աշխատավորների սպառողական պահանջարկի և ընդհանուր տնտեսական կոնյունկտուրայի վրա խիստ բացասական ազդեցություն է գործում շարունակաբար աճող գործազրկությունը։ 1975 թվականի մայիսի սկզբներին ԱՄՆ-ում պաշտոնապես գրանցված լրիվ գործազուրկների թիվը հասել էր 8,5 միլիոնի (երկրի ամբողջ աշխատուժի 9,2 տոկոսը), որն ավելի քան կրկնակի շատ է, քան մեկ տարի առաջ։ Զարգացած արդյունաբերական երկրներում լրիվ և մասնակի գործազուրկների թիվը ներկայումս հասնում է մոտավորապես 22 միլիոնի («Экономическая газета», № 30, 1975 г., стр. 21)։ Բացի այդ, ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի, Հոլանդիայի և այլ երկրների արդյունաբերական մի շարք ճյուղերում բանվորներին ստիպել են անցնել ոչ լրիվ աշխատանքային շաբաթվա՝ աշխատավարձի կրճատմամբ հանդերձ։ Այն դեպքում, երբ միլիոնավոր մարդիկ գործազուրկ են, հազարավոր կապիտալիստական ձեռնարկություններ աշխատում են խրոնիկական թերբեռնվածությամբ։ Այսպիսով, սնանկ դուրս եկավ «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիայի հեղինակների այն ջատագովությունը, թե «նեոկապիտալիզմի» ժամանակ կհաղթահարվեն ճգնաժամերը,



կվերանան դասակարգային հակամարտությունները, գործազրկությունը, աղքատությունը և բուրժուական կարգերին բնորոշ մյուս խոցերն ու արատները։

Ինչ վերաբերում է բուրժուական պետության տնտեսական դերին, ապա «պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանները, մեղմ ասած, չափազանցում են այն։ Անշուշտ, բուրժուական պետությունը ներկայումս ավելի մեծ չափով է մասնակցում տնտեսության կառավարմանը։ Տնտեսության նկատմամբ խոշոր կապիտալի վերահսկողությունն ընդունել է այնպիսի ծավալ, որը դուրս է գալիս առանձին մոնոպոլիայի շրջանակներից և իրականացվում է համեմատաբար կազմակերպված ձևով՝ պետության միջամտությամբ։ Կապիտալիստների տարբեր խմբերի՝ արդյունաբերողների, բանկիրների, բարձրագույն կառավարողների և զինվորական վերնախավի միջև ստեղծվել է աշխատանքի յուրատեսակ բաժանում։ Սակայն այդ խմբերը դասակարգային շահերի ընդհանրությամբ փոխադարձաբար կապված են միմյանց, այնպես որ նոր պայմաններում էլ բուրժուական պետությունը շարունակում է մնալ աշխատավորների թշնամին։ Բուրժուական պետության կողմից ձեռնարկվող կարգավորիչ միջոցառումները բխում են ոչ թե ժողովրդի, այլ միայն մոնոպոլիաների շահերից։

ՎԱՂՈՒՑ Ի ՎԵՐ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԳԵՏՆԵՐԸ, ռեֆորմիստներն ու ռեվիզիոնիստները կապիտալիզմի «բարելավման» հեռանկարները կապում են բաժնետիրական ընկերությունների գոյության հետ։ Կապիտալի «դեմոկրատացման» գաղափարը խորթ չէ նաև «պոստինդուստրիալ հասարակության» տեսաբաններին։ Նրանք ևս աշխատավորների մեջ տարածում են այն միտքը, թե արդի փուլում մասնավոր սեփականատերերի փոխարեն գոյություն ունեն բաժնետիրական ընկերություններ, որոնց փայատերեր կարող են լինել ինչպես հարուստները, այնպես էլ չքավորները, ինչպես կապիտալիստները, այնպես էլ բանվորները։ Ամերիկյան տնտեսագետ Ա. Բերլին գտնում է, որ եթե նախկինում կային մասնավոր ձեռնարկություններ, որոնց տերերի համար աշխատում էին շահագործվող զանգվածները, ապա այժմ բուրժուական պետության մեջ մասնավոր սեփականատերերը վերացել են և, հետևաբար, բացառված է նաև մարդու կողմից մարդու շահագործումը։ Բուրժուազիայի գաղափարախոսները չեն վարանում կապիտալիստներին ու բանվորներին անվանել նույնիսկ հասարակության իրավահավասար անդամներ, որոնք իբր թե հավասարապես շահագրգռված են շահույթի մեծացմամբ։

Ֆրանսիացի տնտեսագետ, Սորբոնի համալսարանի պրոֆեսոր Ռ. Արոնը իր 18 դասախոսություն ինդուստրիալ հասարակության մասին գրքում նշում է, որ արտադրության միջոցների սեփականության հարցը դադարել է այն հարցը լինելուց, որը տարբերություններ էր դրսևորում նույն առաջադիմող հասարակության երկու տարատեսակների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի միջև։ Այդ թեզը հիմնավորելու նպատակով նա «վկայակոչում» է Կ. Մարքսին, իհարկե, նենգափոխելով վերջինիս ասույթները, և հայտարարում, թե իբր Կ. Մարքսը բաժնետիրական ընկերությունը համարում էր մասնավոր սեփականության ոչնչացում, նրա ազգայնացում (տե՛ս Г. Б. Хромушин, Буржуазные теории политической экономии, стр. 73—74)։ Կ. Մարքսի մտքերի այդպիսի կեղծումով Ռ. Արոնը ձգտում է ապացուցել, թե արդեն մասնավոր սեփականություն գոյություն չունի և հասարակության ինդուստրիալ զարգացման շնորհիվ սոցիալիստական հեղափոխության հարցն օրակարգից հանված է։

Ամենից առաջ պետք է նշել, որ Կ. Մարքսը խոսել է ոչ թե բաժնետիրական ընկերությունների ստեղծման միջոցով կապիտալիստական սեփականության ոչնչացման, այլ նրա զարգացման նոր աստիճանի մասին, երբ անհատական սեփականությունը վերածվում է խմբային կապիտալիստական սեփականության, երբ առանձին կապիտալիստի փոխարեն ասպարեզ է գալիս զուգընկերացված կապիտալիստը։ Կապիտալի համակենտրոնացման ընթացքում «սեփական գործունեության անկարող... կապիտալները,— գրել է նա,—

վարկի ձևով դրվում են խոշոր ձեռնարկների ղեկավարների տրամադրության տակ» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս 1, գիրք 3, էջ 234):

Այնուհետև, բաժնետիրական ընկերությունները, ինչպես հայտնի է, ոչընչով չեն փոխում և չեն կարող փոխել կապիտալիզմի շահագործողական բնույթը: Գնելով որոշ քանակությամբ մանր բաժնետոմսեր, բանվորը կամ ծառայողը ամենևին էլ չի դադարում շահագործվելուց: Բացի այդ, բաժնետիրական ընկերությունների փայատերերի շուրջ 90 տոկոսը գրեթե ոչինչ չգիտի ֆիրմաների գործառնությունների, աշխատավարձի և բարձր պաշտոնատար անձանց կողմից յուրացվող դիվիդենտների, շահութամասերի վճարման, գների սահմանման և բազմաթիվ այլ հարցերի մասին:

Մոնոպոլիաները շարունակ փոքր դոզաներով յուրացնում են բնակչության մոտ եղած չնչին դրամական միջոցները: Եթե ԱՄՆ-ում 1927—1930 թթ. կար 6—11 միլիոն բաժնետեր, ապա 1970 թվականին այդ թիվը հասավ մոտավորապես 30 միլիոնի: Մանր բաժնետոմսերի շնորհիվ մոնոպոլիստական կապիտալը ստանում է լրացուցիչ միջոցներ՝ ընդարձակելով կապիտալիստական սեփականության իշխանությունը վարձու աշխատանքի վրա: Վ. Ի. Լենինը դեռևս 1902 թվականին «Ռուսաստանի տնտեսական կյանքից» հոդվածում այդ առթիվ գրում էր. «Խնայողական դրամարկղների միջոցով բանվորներն ու մանր արտադրողներն ավելի ու ավելի մեծ թվով են դառնում խոշոր ձեռնարկությունների մասնակիցներ: Այս փաստն անկասկածելի է: Բայց այս փաստը ապացուցում է ո՛չ թե սեփականատերերի թվի աճումն, այլ՝ 1) աշխատանքի հանրայնացման աճը կապիտալիստական հասարակության մեջ և 2) մանր արտադրության աճող ենթարկումը խոշորին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 107): Վ. Ի. Լենինը ցույց է տալիս, որ կապիտալիստական ձեռնարկության հետ մանր ավանդատուի միահյուսումից օգուտ է քաղում միայն խոշոր կապիտալը: Բանն այդպես է նաև կապիտալիզմի զարգացման արդի փուլում:

ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՆԵՐԸ մեծ ջանքեր են թափում բանվոր դասակարգին ապակողմնորոշելու, նրան հեղափոխական շարժումներից հեռու պահելու համար: «Պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիայի գլխավոր տեսաբան Դ. Բելլը փորձում է ապացուցել, թե ներկայումս ոչ միայն վերանում է կապիտալիստական սեփականությունը, այլև չքանում են բուրժուական հասարակության հիմնական դասակարգերը: Բուրժուական այլ տնտեսագետների պնդմամբ, ժամանակակից կապիտալիստական հասարակարգում դասակարգերն արդեն վերացել են, քանի որ բուրժուազիան ու պրոլետարիատը տարրալուծվել են մեկ, ինչ-որ «միջին դասակարգի» մեջ:

Բուրժուական հասարակության սոցիալական կառուցվածքի ներկա վիճակը ցույց է տալիս, որ կապիտալիզմի ջատագովները միտումնավոր կեղծում են իրականությունը: Քանի դեռ կա կապիտալիզմը, քանի դեռ տիրապետում է արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, դասակարգերը չեն վերանա: Վարձու աշխատանքի շահագործումը, որը ժամանակակից կապիտալիզմի հիմքն է, ոչ միայն չի նվազում, այլև ավելի ու ավելի աճում է: Այսպես, ԱՄՆ-ի վերամշակող արդյունաբերության մեջ վերջին հարյուր տարվա ընթացքում շահագործման նորման աճել է մոտավորապես երեք անգամ: Այդպիսի պայմաններում, բնականաբար, ոչ մի խոսք չի կարող լինել կապիտալիստների ու բանվորների շահերի ընդհանրության, նրանց միաձուլման մասին: Ընդհակառակը, ներկա դարաշրջանում պրոլետարիատն ավելի խոր է ըմբռնում իր դասակարգային միսիան և մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում իր շուրջն է համախմբում նաև աշխատավորական մյուս խավերին:

Դասակարգային պայքարի սրումը բնորոշ է տնտեսապես զարգացած բոլոր կապիտալիստական երկրներին: Անցյալ տարի այդ երկրներում գործադուլավոր բանվորների թիվը հասավ 47 միլիոնի: 1975 թ. առաջին կիսամյակի տվյալներից երևում է, որ ընթացիկ տարում այդ թիվն ավելի մեծ կլինի: Այսպես, ճապոնական բանվորների այս տարվա ավանդական «գարնանային հարձակումները» կրեցին զանգվածային բնույթ: Ճապոնիայի արհմիությունների



գլխավոր խորհրդի և գյուղացիական միությունների համաճապոնական ֆեդերացիայի որոշմամբ արդյունաբերական բանվորների հետ միասին դրանց առաջին անգամ մասնակցեցին գյուղացիները: Ֆրանսիայում «Ռենո» ավտոմոբիլաշինական գործարանների բանվորների գործադուլը տևեց մոտավորապես երկու ամիս: Ընթացիկ տարվա կեսերին 100 հազար ֆրանսիացի բանվորներ հայտարարեցին գործադուլ՝ պահանջելով աշխատավարձի բարձրացում, աշխատանքի պայմանների բարելավում, աշխատանքից ազատելու դեմ երաշխիքներ: Ֆրանսիայի խոշորագույն արհմիութենական կենտրոնների որոշմամբ 1975 թ. հունիսի 12-ին ամբողջ երկրում անցկացվեց մոնոպոլիաների հակաբանվորական գործողությունների դեմ բողոքի և մանիֆեստացիայի օր: Գործադուլային հզոր շարժում է ծավալվում Իտալիայում, ԱՄՆ-ում, Կանադայում և այլ երկրներում:

Այնուամենայնիվ, քողարկելով կապիտալիզմի հակասությունները, «պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանները փորձում են ապացուցել, թե արդի պայմաններում հասարակական արտադրության մեջ մարդկանց դիրքը որոշվում է «նոր չափանիշով»: Ֆուտուրոլոգիական հետազոտությունների կեղծ արդյունքների հիման վրա նրանք հանգում են այն եզրակացության, թե արդեն 2.000 թվականին կապիտալիստների իշխանությանը կփոխարինի գիտության իշխանությունը: Դ. Բելլը հայտարարում է. «ինդուստրիալ հասարակության» հիմքը մեքենայական արտադրությունն էր, իսկ «պոստինդուստրիալ հասարակությանը»՝ գիտելիքների արտադրությունը: Այստեղից էլ, հավաստիացնում է նա, «ինդուստրիալ հասարակության» ժամանակ իշխող սոցիալական դեմքը եղել է բիզնեսմենը, իսկ «պոստինդուստրիալ հասարակության» ժամանակ կլինի գիտնականը, փորձագետը (տե՛ս «Мировая экономика и международные отношения», 1975, № 3, стр. 102):

Իրականում բուրժուական հասարակության առօրյան դրսևորում է բոլորովին հակառակ միտումը: Հետզհետե գիտությունն ավելի ու ավելի շատ է ենթարկվում մոնոպոլիաների շահերին: Ըստ ԳԴՀ-ի Հումբոլդի անվան համալսարանի քաղաքատնտեսության ամբիոնի վարիչ Դ. Քլեյնի հաշվարկների, ԱՄՆ-ում գիտական հետազոտությունների համար միջոցների 64 տոկոսը հատկացնում է պետությունը, սակայն դրա 67 տոկոսը ծախսում են մոնոպոլիաները: ԳՖՀ-ում պետությունը տիրապետում է գիտական հետազոտությունների միջոցների 57 տոկոսին, որի 66 տոկոսն օգտագործվում է մոնոպոլիաների կողմից („Einheit„, 1971, № 5, էջ 598—611): Զարգացած կապիտալիստական երկրներում գիտահետազոտական կենտրոնները, փաստորեն, դարձել են մոնոպոլիաների և բուրժուական պետության միաձուլման հանգուցային կետեր:

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ խիստ մեծանում է որակյալ բանվորների ու մասնագետների դերը: Դա բնական է: Սակայն նույնիսկ այդ փաստը «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիայի ներկայացուցիչներն օգտագործում են դասակարգային պայքարի մարման իրենց թեզը հիմնավորելու նպատակով: Այդ կոնցեպցիայի հեղինակները համառորեն անցկացնում են այն միտքը, թե բուրժուազիան կորցնում է կամ թերևս արդեն կորցրել է սոցիալական իշխանությունը և, իբր, վերջինս անցել է «նոր բյուրոկրատական խավի»՝ մասնագետների ձեռքը: Դ. Բելլը գտնում է, որ եթե «ինդուստրիալ հասարակության» պայմաններում դասակարգային պայքարը տեղի էր ունենում կապիտալիստների և բանվորների միջև, ապա «պոստինդուստրիալ հասարակության» ժամանակ բախումներ կլինեն միայն մասնագետների և հասարակ ժողովրդի միջև: Դրանով Դ. Բելլը փորձում է աշխատավորների գիտակցության մեջ ներարկել այն գաղափարը, թե «պոստինդուստրիալ հասարակության» պայմաններում հասարակության սոցիալական շերտավորման հիմքը միայն գիտելիքներն են: Նա հայտարարում է, որ «պոստինդուստրիալ հասարակության» ժամանակ սոցիալական էլիտան՝ մասնագետները, իշխանությունն իրականացնում են հանուն ամբողջ ժողովրդի արմատական շահերի:

Կապիտալիստական հասարակարգում ոչ մի տարբերություն չկա վարձու բանվորի և վարձու մասնագետի միջև: Նրանք հավասարապես վաճառում են իրենց աշխատուժը և հավասարապես շահագործվում: Մոնոպոլիաներն արտադրության մեջ ներգրավում են աշխատանքի (նույն թվում մտավոր աշխատանքի) վիթխարի զանգվածների: Ոչ միայն որակյալ բանվորի, այլև մասնագետի աշխատավարձը նրանց ստեղծած արժեքի մի մասն է միայն: Հետևաբար, այն պնդումը, թե ժամանակակից բուրժուական հասարակության մեջ էկոնոմիկայի և քաղաքականության հարցերը լուծում են գիտնականներն ու մասնագետները, նպատակ ունի թուլացնել հակամոնոպոլիստական շարժումը, ժողովրդական զանգվածների դժգոհությունը դնել կեղծ հունի մեջ: Պատահական չէ, որ «պոստինդուստրիալ հասարակության» շատ տեսաբաններ իրենց աշխատություններում խնամքով շրջանցում են դասակարգային հակասությունների և սոցիալ-տնտեսական երկու համաշխարհային համակարգերի պայքարի հարցերը:

Վերջին ժամանակներս «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիայի հեղինակները փութաջանորեն տարածում են այն միտքը, թե առաջիկայում հասարակության մեջ մարդկանց դիրքը որոշվելու է ըստ նրանց արժանիքների: Ճիշտն ասած, այդ տեսակետն այնքան էլ նոր չէ: Դեռևս 20-ական թվականներին ամերիկյան ինստիտուցիոնալիզմի հիմնադիրներից մեկը՝ Տորսթեն Վեբլենը, առաջ քաշեց «սոցիալական դարվինիզմի» տեսությունը: Նա գտնում էր, որ մարդկային հասարակության մեջ, ինչպես բուսական և կենդանական աշխարհում, տեղի է ունենում «բնական ընտրություն», և առաջին պլան են մղվում լիարժեք անհատները: Տ. Վեբլենի կարծիքով, հասարակության մեջ գոյության պայքարի թուլացումը կդառնա ընդհանուր անկման պատճառ: «Պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանները, ըստ էության, պաշտպանում են «սոցիալական դարվինիզմի» հակագիտական տեսությունը, ինարկե, նոր տերմինաբանությամբ: Դ. Բելլը «պոստինդուստրիալ հասարակության» քաղաքական կարգն անվանում է մերիտոկրատիա (անգլերեն «մերիտ»—արժանիք բառից): Ըստ նրա, այդ հասարակության մեջ մարդկանց դիրքը որոշվում է ոչ թե ունեցվածքով, այլ արժանիքներով ու ընդունակություններով:

«Պոստինդուստրիալ հասարակության» տեսաբանները հայտարարում են, թե մերիտոկրատիան կապահովի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» սկզբունքի իրականացումը: Ոչ վաղ անցյալում բուրժուական տնտեսագետները քննադատում էին բաշխման կոմունիստական լոզունգը: Ամերիկյան բուրժուական գռեհիկ տնտեսագետ Ջոն Բեյթս Կլարկը «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» սկզբունքը բնութագրում էր իբրև մեկի կողմից մյուսի թալանում: Սակայն այժմ, աշխատավորական զանգվածներին մոլորեցնելու նպատակով, «պոստինդուստրիալ հասարակության» տեսությունը մարքսիստական քաղաքատնտեսությունից փոխ է առել այդ լոզունգը: Անշուշտ, մարդասիրական լոզունգներ հռչակելը քիչ է դեռ: Դրանց իրականացման համար ամենից առաջ անհրաժեշտ է հասարակությունը վերափոխել կոմունիստական սկզբունքներով, որին, սակայն, բուրժուական գաղափարախոսները համաձայն չեն: Նրանք ձգտում են ինչ գնով էլ լինի վերահաս կործանումից փրկել կապիտալիզմը:

ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼՆ ԻՐ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՆԵՐԻՆ տալիս է զանազան սոցիալական պատվերներ: «Պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիան այդ պատվերների կատարման յուրատեսակ փորձ է, որի նպատակն է պաշտպանել կապիտալիզմը և բուրժուական գաղափարախոսությունը դուրս բերել փակուղուց: Բայց պատմությունն ունի իր զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները: Կապիտալիզմին հաջորդում է ոչ թե «պոստինդուստրիալ հասարակությունը», այլ սոցիալիզմն ու կոմունիզմը: Մեր դարաշրջանի գլխավոր բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին:



# ՄԵՐ ՎԱԽԹԱՆԳԸ

(ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ՏԱՐԵԿԱՆ Է ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆԸ: Յոթանասո՞ւն տարի... Դժվար է հավատալ դրան, քանի որ նա միշտ երիտասարդ է, առույգ, զվարճախոս. գրող-որսորդին հատուկ իր հումորով երևակայության աշխարհըն է տանում գրուցակցին:

Անանյանը ծնվել է Հայկական բարձրավանդակի գեղեցիկ անկյուններից մեկում՝ Լոռվա Պողոս-Քիլիսա գյուղում (Դիլիջանի մոտ), որն իր բարձրիկ սարերով, զուլալ աղբյուրներով, կարկաչահոս գետակներով ու ծաղկազարդ հովիտներով հրապուրում է մարդուն: Նա ծընվել է վրանում, սնվել անտառներում, բնեյ բացօթյա՝ աստղերի ցոլքի, լուսնի արծաթյա շողերի տակ: Ծրջապատը սեր է հարուցել պատանի Վախթանգի սրտում, սեր բնության նըկատմամբ:

Մանկությունից հափշտակվելով ընթերցանությամբ, Վախթանգը հետաքրքրությամբ կարդում է մեծանուն գրողների, նրանց թվում և իր հայրենակցի՝ Հովհաննես Թումանյանի խորիմաստ ստեղծագործությունները, որոնցում արտացոլված են մեր ժողովրդի կյանքը, խոր հառաչանքը թշվառ զանգվածների: Լեռան ծաղկոտ լանջին պառկած՝ նա կարդացել է լուսածագից մինչև աղջամուղջ: Երբեմն այնքան է տարվել ընթերցանությամբ, որ նույնիսկ մոռացել է շրջապատը, իր խնամքին հանձնված անասուններին: Պատանու ընկերն ու խորհրդատուն գիրքն է եղել: Գիրքը նպաստել է նրա հոգևոր աշխարհի բյուրեղացմանը, աշխարհայացքի ձևավորմանը:

Ո՛չ միայն գրականության, այլև բուն կյանքի անմիջական ապրումով, Վախթանգը վաղ է նկատել հայրենի երկրի աղքատության ու հարըստության բևեռները, աղքատներ, որոնց հագուստների կարկատանները, ինչպես գրում է ինքը, այնքան շատ էին, որ հնարավոր չէր տարբերել, թե ի՛նչ կտորից են, ի՛նչ գույնի:

ՎԱԽԹԱՆԳԸ ՆՈՐ ԷՐ ոտք դրել տասնվեց տարվա շեմին, երբ Հայաստանի վրա ծածանվեց մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշը: Այդ դրոշը ամենից առաջ փողփողաց այն

վայրերում, ուր ծնվել է նա, ուր անցել էին նրա մանկությունը, չարքաշ պատանեկությունը: Անցյալի սոցիալական անհավասարության ու աղքատության դաժանությունը ճաշակած Վախթանգը նվիրվում է նոր կարգի՝ սոցիալիզմի համար մղվող գոտեմարտին: Մասնակցելով Հայաստանում տեղի ունեցած քաղաքացիական կռվին, ապա՝ սովետական իշխանության ամրապնդման համար մղվող պայքարին, աճում, ամրանում ու կոփվում է կոմերիտական Վ. Անանյանը: 23 տարեկան հասակում որդեգրվելով բոլշևիկների կուսակցությանը, մնում է նրա հավատարիմ զինվորը, տաղանդավոր լրագրողն ու գրողը:

Մի առիթով Վ. Անանյանը գրել է. ես կոմունիստական կուսակցության անդամ եմ, կուսակցություն, որն ինձ ցեխից ու կարիքից վեր հանելով բարձրացրել, հասարակական-քաղաքական դեմք է դարձրել: Իրոք, կուսակցությունն է Անանյանին բարձրացրել կյանքի հատակից, հնարավորություններ ընձեռել նրան անվանի գրող դառնալու:

Չքավորության պատճառով հայրը Վախթանգին հանում է դպրոցից, ուղարկում ձմեռանոց՝ տավար պահելու: Ընդհատված կրթությունը հետագայում նա լրացնում է՝ սովորելով դասընթացներում ու կուսակցական դպրոցներում, համառ ընթերցանությամբ:

Շուտով նա ըմբռնեց հասարակական կյանքում տեղի ունեցող իրադարձությունները, խորապես սիրեց արվեստը, ընդլայնեց մտահորիզոնը: Ի վերջո, Անանյանի համալսարանը եղել է կյանքը, կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարը: Նոր կյանքի կառուցման ճանապարհին հանդիպած դժվարությունները, խոչընդոտները հաղթահարելու համար ո՛չ միայն ինքն է մաքառել, այլև, որպես կոմերիտմիության գյուղական շրջկոմի քարտուղար, համախմբել, ոտքի է հանել կոմերիտական բջիջներին, երիտասարդությանը գյուղը վերափոխելու:

Հիշում ենք Վ. Անանյանին այդ ժամանակաշրջանում. կոմերիտական համազգեստով, կաշվե լայն գոտին մեջքին պինդ կապած, ուսապարկով, ոտքով գյուղից գյուղ էր գնում, կոմունիստական գաղափարներով համակում պատանիներին ու աղջիկներին: Կոմերիտական գործիչը ակտիվ աշխատակցում է պարբերական մամուլին, գրում հոդվածներ, հուզիչ ակնարկներ գյուղի կոմերիտականների փոթորկալի կյանքի և նրանց անձնվեր գործերի մասին— ջրանցքների կառուցում, տրակտորային օղակների ստեղծման համար միջոցների հայթայթում, գյուղացու կենցաղի ու ապրելակերպի վերափոխում, խրճիթ-ընթերցարանների ստեղծում, անգրագիտության վերացում և այլն:

Քսանյոթ թվականին Անանյանը մուտք է գործում պարբերական մամուլ: Սկզբում աշխատում է «Ավանգարդում», հետո՝ «Խորհրդային Հայաստանում», ապա նշանակվում հանրապետական գյուղատնտեսական թերթի խմբագիր: Լրագրող-գրողն իր ակնարկներում, վիպակներում և ավելի լայն կտավի ստեղծագործություններում մեծ նշանակություն է տալիս սովետական մարդկանց կոմունիստական աշխարհայացքով դաստիարակելու խնդրին: Վախթանգը գրում է դարի շնչով, դարի ոգով, կոմունիստի զգացմունքով: Նրա գեղարվեստական գործերում ջերմ ու հուզիչ ներկայացված են սովետական ազնիվ մարդու այն հատկանիշները, որոնք բխում են կոմունիստի բարոյական կոդեքսից—սովետական հայրենասիրություն, պրոլետարական ինտերնացիոնալիզմ, աշխատասիրություն, ընկերական փոխադարձ օգնություն, ժողովրդական հարստության պահպանում...

Սովետական կարգերի հաստատման ամենածանր շրջանում մի խումբ պարտիզաններ երդվում են մինչև վերջին շունչը կռվել ժողովրդի ազատության համար: Եվ ահա կոմերիտական Վախթանգն ու ընկերները գաղտնի փամփուշտներ, նռնակներ ու հաց են հասցնում անտառներում թաքնված պարտիզաններին: Միշտ այդպես էլ Վախթանգի հերոսներն իրենց կյանքը չեն խնայում սովետական իշխանության, սոցիալիստական հայրենիքի, մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության համար: Նրա պատմվածքներում սրտառուչ են կերտված Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մարտնչած և քաղաքացիական կռվում հերոսաբար զոհված վաշտի հրամանատար, կոմունիստ Վոլոդյա Ոսկանյանի, Դիլիջանի՝ «Սպարտակի» հիմնադիր Գրիգոր Մանթաշյանի կերպարները: Հեղինակը կսկիծով է հիշում կոլտնտեսության նախագահ, իր մանկության ընկեր Գրիգորին, որը բանդիտների ձեռքով ընկնում է գյուղի սոցիալիստական վերափոխման արշալույսին: Նրա Սրյունոտ տոմսը ակնարկում սրտառուչ է պատկերված հայոցձորցի կոմունար Առաքելի կերպարը, որը ծանր վիրավոր, արյունաշաղախ վիճակում շարունակում է կռվել բանդիտների դեմ: Նրա պատմվածքների հերոսները ազնիվ են ու նվիրված, նրանց բնութագրումները՝ սրտաբուխ ու ճշմարիտ, որովհետև ինքը եղել է պարտիզան, մասնակցել քաղաքացիական կռվին, որպես կոմունար պայքարել սովետական կարգերի թշնամիների դեմ:

Անանյանի ստեղծագործությունները տոգորված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մեր երկրի ժողովուրդների բարեկամության ոգով: Այդ ցայտուն արտացոլվում է նրա բազմաթիվ գործերում, մասնավորապես Բարեկամները հանդիպում են նորից պատմվածքում: Բնական ու անկեղծ են Վ. Անանյանի այն էջերը, որոնցում նկարագրում է Ղափանի պղնձահանքերում աշխատող հայ և ադրբեջանցի բանվորների սերտ բարեկամությունը, փոխադարձ, ջերմ ու սրտաբուխ հյուրընկալությունները:



ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՆԱՆՅԱՆԸ սիրել է աշխատանքը, իր քրտինքով թեթևացրել ընտանիքի հոգսը: Նախրապան է եղել, փայտահատ, գերանդի է քաշել օրվա հացը վաստակելու նպատակով: Աշխատանքը փառք ու պատիվ է մարդու համար: Ահա թե ինչու իր պատմվածքներում ժողովրդական ասացվածքներով ու փիլիսոփայական մտորումներով աշխատասիրություն է սերմանում նա պատանիների ու աղջիկների հոգում: Այդ ոգով գրված նրա երկերը հանրահայտ են ու սիրված զանգվածային ընթերցողների կողմից:

Իր ստեղծագործություններում Անանյանը հավատ, համոզմունք է ներշնչում ընթերցողին, ուսուցելով, որ կյանքում չպետք է ընկրճվել, հուսահատվել դժվարություններից, խոչընդոտներից, այլ պետք է լարել ջանքերը, գործադրել ուժերը ծանր կացությունից դուրս գալու համար: Այդ պայքարում չպետք է ետ նայել, այլ հարկավոր է միշտ ձգտել առաջ, աշխատանքում հասնել նորանոր հաջողությունների, հաղթահարել բնության արհավիրքները: Հենց այդ է կյանքի իմաստը՝ վտանգի ու դժվարությունների առաջ չընկրկելը, գրում է նա: Պայքարում հաղթանակի հասնելու, աշխատանքում հաջողությունների գրավականը կոլեկտիվ ջանքերն են, ընկերական փոխադարձ օգնությունն ու աջակցությունը: Նույնիսկ կենդանիներն ու թռչուններն իրենց գոյությունը պահպանելու համար համախմբվում են: Կոլեկտիվի մեջ է ուժը:

Պատանիների սիրելի գիրքը դարձած Սևանի ափին վեպում Անանյանը հուզիչ վարպետությամբ վերակերտել է Սևանի ափի մի գյուղի պիոներների ռոմանտիկական կյանքը: Այդ գիրքն իրավամբ համարվում է մեր մանկապատանեկան գրականության գոհարներից մեկը:

Վախթանգ Անանյանը կոմունիստ հայրենասեր է: Երբ բռնկվեց Հայրենական մեծ պատերազմը, կամավոր մեկնեց ռազմաճակատ՝ պաշտպանելու մեծ Հոկտեմբերի նվաճումները: Նա ֆաշիստական ոհմակի դեմ կռվել է զենքով, արկերի ու ռումբերի որոտի, գնդակների տարափի տակ գրել է ակնարկներ, պատմվածքներ սոցիալիստական հայրենիքի անվեհեր պաշտպանների մասին:

ՄԵՐ ՎԱԽԹԱՆԳԸ՝ ականավոր գրողը, ինքնամոռաց որսորդը, որը որսի է գնում ասես գրական թեմաներ որսալու համար միայն, միաժամանակ հրաշալի բնագետ է: Նա մանրազնին ուսումնասիրել է հայկական բարձրավանդակի բուսական ու կենդանական աշխարհը, պատկերել կենդանիների, սողունների, թռչունների, ձկների, ծառ ու ծաղկի կյանքը: Անանյանն իր ընթերցողներին հորդորում է ճանաչել հայրենի երկիրը, սիրել նրա բնությունը, զմրուխտ մարգագետինները, կենդանական աշխարհը: Հայաստանի ֆլորայի ու ֆաունայի մասին գրած նրա գեղարվեստական երկերն իմաստալի են, հրապուրիչ, նպատակային: Նա բնության պաշտպանությունն իր համար կյանքի խնդիր դարձրեց դեռ այն տարիներին, երբ այդ մասին այժմյան տագնապով չէին խոսում: Իսկ այսօր դա նրա մտահոգության գլխավոր առարկան է: Նա ձոներգում է նրանց, ովքեր կառուցում են ջրանցքներ, լճեր ու լճակներ, անտառապատում, ծաղկեցնում անապատները, ովքեր ամայի տարածության վրա այգի են տնկում:

Տարիների համառ ուսումնասիրության շնորհիվ Վախթանգ Անանյանը պատշաճ վարպետությամբ վերակենդանացրել է Հայաստանի բուսական ու կենդանական աշխարհի դինամիկ պատմությունը (հնագույն շրջանից սկսած մինչև մեր օրերը): Իր հայացքները նա հիմնավորում է կենդանական ու բուսական աշխարհին գիտակ հեղինակների հետազոտությունների վկայությամբ:

Շնորհալի գրողի պատմվածքներն ու ակնարկները համեմված են ժողովրդական անմոռաց ասացվածքներով, առակներով ու սրախոսություններով: Նրա հումորը հարուցում է մարդկանց լիաթոք ծիծաղը: Բարձրացնելով բնության պահպանության ու մթնոլորտի մաքրության հարցը՝ Անանյանը միաժամանակ արծարծում է հույժ կարևոր մի պրոբլեմ— Հայաստանում վերականգնել անհետացած կենդանիների ու թռչունների տեսակները, և հուշում, թե ինչպիսի՛ ուղիներով կարելի է հասնել դրան:

Նկարագրելով եղնիկի հեզաճկուն վազքը, ապա ձագուկի հետ ջուր խմելու հուզիչ տեսարանը, նա հիշում է, թե ինչպես ստիպել է որսորդ ընկերոջը հրազենի փողը վար իջեցնել: Նա իր որսորդական հրացանը չի բարձրացնում այն դաշտահավի վրա, որի թևերի տակ ծվարել են ճուտիկները: Ջայրույթով նշա-

վանում է որսագողերին, որոնք պայթուցիկ նյութերով թունավորում են կարկաչահոս գետերն ու դրանցում խայտացող ձկներին... Նա չի հանդուրժում այն մարդկանց, ովքեր կացնահատում են պիտանի ծառերն ու թփուտները, մերկացնում սարալանջերն ու գետահովիտները:

Անանյանի կյանքի յոթանասուն տարիներից հիսունը եղել են բեղմնավոր ստեղծագործությունների տարիներ: Հինգ ստվար հատորներ, համաշխարհային ճանաչում... Նրա գեղարվեստական արկածային գործերը սիրով են ընթերցում ո՛չ միայն պատանիներն ու աղջիկները, այլև տարեց մարդիկ:

Որպես մեր օրերի լավագույն մանկական գրող, տաղանդավոր ակնարկագիր ու պատմող նրան ճանաչում ու սիրում են ո՛չ միայն մեր երկրի, այլև արտասահմանյան շատ ընթերցողներ, նրա պատմվածքներն ու ակնարկները հարստացրել են շատ ժողովուրդների գրադարանները:

Ծննդյան յոթանասունամյակի կապակցությամբ այցի էի գնացել վաղեմի ընկերոջս՝ Վախթանգին. նրա աշխատասենյակում նստած՝ վերհիշում էինք պայքարի անցած դժվարին, բայց և հաղթանակներով լի օրերը: Գրապահարանում գրքեր էին, բազում ու բազմազան գրքեր: Հետաքրքրասիրությունը հաղթեց և, մոտենալով, գրադարակից հանեցի իր իսկ՝ Վախթանգի՝ արտասահմանում թարգմանաբար լույս տեսած գործերը. իսկ նրա գրքերը հրատարակվել են շատ երկրներում— Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Անգլիայում, Ճապոնիայում, Չինաստանում, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում... 40 ազգերի ու ազգությունների լեզուներով:

Ժպտացող աչքերով հետևելով Անանյանը մեկնում է ինձ շքեղակազմ մի գիրք.

— Իսկ սա լույս է տեսել Հարավային Աֆրիկայում,— հուզմունքով ասում է նա:

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ու սովետական կառավարությունն ըստ արժանվույն են գնահատում Վ. Անանյանի գրական բազմամյա վաստակը: Սովետական գրականության զարգացմանը մատուցած ծառայությունների համար և ծննդյան յոթանասունամյակի կապակցությամբ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով նա պարգևատրվեց ժողովուրդների բարեկամության շքանշանով: Մինչ այդ Վ. Անանյանը պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի երկու և Պատվո նշան շքանշաններով: 1950 թվականին մանկա-պատանեկան լավագույն գրքի համամիութենական մրցույթում նրա գործերն արժանացել են մրցանակի, նրան շնորհված է ՀՍՍՀ կուլտուրայի վաստակավոր գործչի կոչում:

Մեր Վախթանգը յոթանասուն տարեկան է: Բայց երիտասարդական ավյունով շարունակում է իր բեղմնավոր գործունեությունը, որպեսզի նոր պատմվածքներ ու մանկական գրքեր մատուցի ընթերցողներին: Գրքեր, որոնցում կփառաբանվեն մեր նոր կյանքի հերոսները, բնությունը պահպանող ու վերափոխող մարդիկ:

Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ



# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՈՎ ՑԵՄԵՆՏՎԱԾ

## ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻ ԼՈՒՅՍԸՆԾԱՅՄԱՆ ԱՌԹԻՎ

Կան մտածողներ, հեղափոխական գործիչներ, որոնց գրական ժառանգության հերթական հրատարակությանն անհամբերությամբ է սպասում ընթերցողը: Այդպիսիներից է բոցաշունչ հեղափոխական, Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից, «մարքսիզմի ծանր հրետանի» Ստեփան Շահումյանը: Չնայած իր կարճատև կյանքին ու պրակտիկ վիթխարի գործունեությանը, նա թողել է տեսական հարուստ ժառանգություն, որի գիտական մշակումը և ամբողջական մատուցումը ընթերցողին չափազանց կարևոր ու շնորհակալ գործ է:

Սովետական իշխանության տարիներին Ստ. Շահումյանի աշխատությունները բազմիցս հրատարակվել են Մոսկվայում, Երևանում, Բաքվում, Թբիլիսիում և այլուր, սակայն դրանք արագորեն սպառվել են: Ի դեպ, նույն հաջողությամբ է սպառվում և նրա հեղափոխական ու տեսական գործունեության վերաբերյալ գրականությունը, որը խոշոր մտածողի ու մարտիկի, մեծ հմայքի տեր մարդու նկատմամբ ժողովրդի երախտագիտության վառ վկայությունն է:

Սովետական Հայաստանի աշխատավորության, հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական կյանքում կարևոր իրադարձություն հանդիսացավ Ստ. Շահումյանի երկերի լիակատար ժողովածուի առաջին հատորի լույսընծայումը, որը հրատարակության է պատրաստել ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը: Այս փաստն ինքնին նշանակալից է ոչ միայն նրանով, որ հրապարակ է գալիս Շահումյանի Երկերի նոր հրատարակությունը, այլև այն առումով, որ հայ ընթերցողն առաջին անգամ հնարավորություն է ստանում իր ձեռքի տակ ունենալու աննկուն լենինյանի Երկերի լիակատար ժողովածուն՝ հինգ հատորով:

Երկերի ժողովածուի առաջին հատորն ընդգրկում է Ստ. Շահումյանի՝ 1902—1907 թթ. գրած հոդվածները, թղթակցությունները, գիտական ուսումնասիրությունները, ճառերն ու նամակները, որոնք տպագրվել են ժամանակի բոլշևիկյան մամուլում, իսկ մի մասն էլ լույս է տեսնում առաջին անգամ:

Չնայած ընդգրկած պատմական կարճ ժամանակաշրջանին, այնուամենայնիվ, հատորում զետեղված նյութերը վառ կերպով ցույց են տալիս Շահումյանի մտահորիզոնի, նրա հետաքրքրությունների չափազանց լայն շրջանակը: Բոցաշունչ հեղափոխականին, կուսակցական ականավոր գործչին ու խոհուն տեսաբանին հավասարապես հետաքրքրել են ինչպես օրվա այրող պրոբլեմները, այնպես էլ պրոլետարական հեղափոխության հեռանկարի, արվեստի ու գրականության հարցերը: Հատորը վերակենդանացնում է պատմական իրադարձություններով հարուստ ժամանակաշրջանի ամբողջական պատկերը, հակասական ու իրարամերժ ուժերի այն բախումները, դասակարգային ու կուսակցական այն բախտորոշ գոտեմարտերը, որոնք այդ փոթորկահույզ դարաշրջանի բովանդակությունն են կազմում:

Հատորում զետեղված նյութերը համոզիչ վկայում են, որ Ստ. Շահումյանն իր պրակտիկ ու տեսական գործունեության առաջին քայլերից իսկ համոզված մարքսիստ-լենինյան էր, որպիսին նա մնաց մինչև իր հիանալի կյանքի վերջը: Իր բազմակողմանի գործունեությամբ, իր տաղանդով ու գրչով նա աննկուն ու անզիջում պայքար մղեց տիրող կարգերի, մարքսիզմի հակառակորդների, օպորտունիստական ամեն կարգի հոսանքների դեմ՝ հանուն աշխատավոր մարդու ազատագրության, հանուն բոլշևիկների կուսակցության միասնության, պրոլետարական հեղափոխության լենինյան ստրատեգիական ու տակտիկական կուրսի հաղթանակի:

1903 թ. գարնանը Շվեյցարիայում Ստ. Շահումյանն առաջին անգամ հանդիպում է Վ. Ի. Լենինին, և այդ ժամանակվանից նրանց միջև

հաստատվում է անձնական ջերմ բարեկամություն ու երբեք չընդհատվող նամակագրություն: Շահումյանի երկերի սույն ընթերցումն անգամ ցույց է տալիս, որ նա մշտապես գտնըվել է առաջնորդի ազդեցության տակ և նրա բոլոր աշխատությունները ներթափանցված են լենինյան գաղափարներով:

XX դարի արշալույսին Ռուսաստանն ապրում էր հեղափոխական խմորումների ժամանակաշրջան: Կապիտալիզմի հակասությունների խորացումը, դասակարգային պայքարի սրումը, աշխատավորական զանգվածների դըժգոհության աննախադեպ աճը, համազգային ճգնաժամը ավետում էին մոտալուտ հեղափոխության մասին: Ռուսաստանի, այդ թվում և Անդրկովկասի հասարակական-քաղաքական ուժերը, կուսակցությունները մշակում էին իրենց դիրքորոշումը վերահաս հեղափոխության նկատմամբ: Այդ ժամանակաշրջանում գրած հոդվածներում, նամակներում, արտասանած ճառերում Ստ. Շահումյանը, իրեն հատուկ սկզբունքայնությամբ ու կրքոտությամբ մերկացնում էր մենշևիկների կազմակերպական ու տակտիկական օպորտունիզմը, էսեռների ավանտյուրիզմը, կադետների հակահեղափոխականությունը և անվերապահորեն պաշտպանում հեղափոխության լենինյան տեսությունը, Լենինի տակտիկական-քաղաքական դրույթները: Այս տեսակետից ուշագրավ են հատկապես հատորում զետեղված «Պլեխանովի նամակի առիթով», «ՌՍԴԲԿ վերջին համագումարը», «Կառավարությունը և դուման», «Ներկա մոմենտը և մեր տակտիկան», բազմաթիվ այլ հոդվածներ ու աշխատություններ, որոնք վկայում են հեղինակի կուսակցական սկզբունքայնության, համապարփակ գիտելիքների, մարդկության լավագույն ապագայի նըկատմամբ նրա աներեր հավատի մասին:

Իբրև հետևողական մարքսիստ-լենինյան, Ստ. Շահումյանը ոչ միայն խորապես տեսնում էր հեղափոխության անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը, այլև նրա նկատմամբ ժողովրդի իրավունքը: «Կառավարությունը և դուման», «Կադետները և սոցիալ-դեմոկրատիան» ու բազմաթիվ այլ աշխատություններում նա զարգացնում էր այն թեզը, որ տիրող կարգերի (տվյալ դեպքում ցարի կառավարության) և ռուս ժողովրդի դարավոր վեճն անխուսափելիորեն պետք է լուծվի հօգուտ ժողովրդի, ըստ որում, այդ վեճը պետք է լուծվի ոչ թե «պետական դումայի նման անզոր ու խղճուկ մի հիմնարկության» (էջ 181), «ոչ թե բուրժուական ռեֆորմների» (էջ 185) միջոցով, այլ միմիայն հրով ու սրով: Չժխտելով հեղափոխության անարյուն, խաղաղ ուղին, Ստ. Շահումյանը, սակայն, գտնում էր, որ «Այն մեծ ազատությունը, որ պետք է ձեռք բերի իր դարավոր անլուր տանջանքներից հետո Ռուսաստանի սահմաններում ապրող բազմամիլիոն ժողովուրդը,— կարելի է ձեռք բերել միմիայն մեծ զոհողությունների, միմիայն ծով-արյան ու սարսափների գնով» (էջ 181—182): Դրանով հանդերձ, մեծ հումանիստն ու ժողովրդի իսկական զավակը խոստովանում էր, որ «...զարհուրելի է մտածել այդ մասին, բայց այդ այդպես է: Այդ է ասում մեզ ամբողջ պատմությունը, այդ է ցույց տալիս իրերի տրամաբանական ընթացքը ներկա Ռուսաստանում:

Պետք է քաջություն ունենալ ուղիղ նայելու իրականության երեսին» (էջ 182):

Ջախջախիչ քննադատության ենթարկելով հեղափոխության հարցերում ամեն կարգի օպորտունիզմ ու հակահեղափոխականություն, չխնայելով նույնիսկ Պլեխանովին, Ստ. Շահումյանը վճռականորեն պաշտպանում էր հեղափոխության լենինյան տեսությունը, բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի, զինված ապստամբության, բանվոր դասակարգի ու գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի, ժամանակավոր հեղափոխական կառավարության հարցերում Լենինի տակտիկական-քաղաքական դրույթները:

Ստ. Շահումյանը մարքսիզմի խոշոր տեսաբան ու հմուտ պրոպագանդիստ էր: Հատորում զետեղված աշխատությունները, մասնավորապես «Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ», «Էվոլյուցիոնիզմը և ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ», «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» ու մյուս աշխատությունները, հոդվածներն ու ճառերը վառ կերպով ցույց են տալիս, թե ինչպիսի խորությամբ էր տիրապետում Շահումյանը մարքսիստական ուսմունքին, ինչպիսի հմտությամբ էր կիրառում նա դիալեկտիկական մեթոդը հասարակական պրոբլեմների ուսումնասիրության բնագավառում:

«Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ» աշխատությունում, որը կառուցված է փաստական հարուստ նյութի գիտական խոր վերլուծության հիման վրա, նա ոչ միայն լիովին պաշտպանում է դասակարգերի ու դասակարգային պայքարի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, այլև պատմական նոր փաստերով հաստատում այն: Հակառակ բուրժուական գաղափարախոսների ու ռևիզիոնիստների, որոնք փորձում էին ազգային հարցը հակադրել սոցիալականին ու առաջին պլան մղել ազգային



կռիվները՝ որպես պատմության շարժիչ ուժ. Ստ. Շահումյանը խիստ որոշակիորեն ընդգծում էր, որ դասակարգերի փոխազդեցությունը, միմյանց դեմ նրանց անխուսափելի կռիվն են «կազմել միշտ համապատասխան պատմական շրջանների բովանդակությունը և պայմանավորել են, վերջին հաշվով, քաղաքական կազմակերպության այս կամ այն ձևի տիրապետությունը» (էջ 69):

Ավելին, նա գտնում էր, որ որևէ պատմական շրջան կամ քաղաքական սիստեմ լավ հասկանալու համար անհրաժեշտ է ամենից առաջ ծանոթանալ այդ ժամանակաշրջանում տիրապետող արտադրաեղանակին, տվյալ հասարակության դասակարգային կազմին: Այդ հարցադրումը կոնկրետացնելով կապիտալիստական արտադրաեղանակի ու նրանում գործող դասակարգերի նկատմամբ, Շահումյանը նշում էր, որ ժամանակակից եվրոպական պետությունների սոցիալական ու քաղաքական ողջ կյանքը լցնում են բուրժուազիայի ու պրոլետարիատի դասակարգային կռիվները: Հետազոտելով պրոլետարիատի՝ որպես դասակարգի, ծագման ու կապիտալիզմի պայմաններում նրա դրության խնդիրը, Շահումյանը փաստական հարուստ նյութի վերլուծության հիման վրա ցույց է տալիս օրգանական այն կապը, որ կա գոյություն ունեցող «սոցիալական միջավայրի» ու սոցիալական բոլոր չարիքների՝ սովի, աղքատության, հոգեկան հիվանդությունների, հարբեցողության, ոճրագործության, պոռնկության միջև: Նա միաժամանակ իրավացիորեն նկատում էր, որ այդ չարիքներն իրենց «ամբողջ գիշատիչ ու համասփյուռ ծանրությամբ ընկնում են պրոլետարիատի վրա» (էջ 101):

Հասարակության զարգացման օրենքների խոր իմացությունը Ստեփան Շահումյանին բերում է այն ճշմարիտ համոզմանը, որ «Պատմությունը երբեք տեղիք և իրավունք չի տալիս իրան ճշմարիտ ըմբռնողներին, հոռետես լինելու իր վերաբերմամբ: Ստեղծելով իր զարգացման ընթացքում որոշ անհրաժեշտ ու անխուսափելի չարիքներ, նա միևնույն ժամանակ կռում-կոփում է այն զենքերը, որ պետք է հարվածեն ու վերացնեն այդ չարիքները, ճանապարհ հարթելով մարդկության ազատ ու հաղթական առաջադիմության համար» (էջ 101—102):

Շահումյանի ստեղծագործություններից ակընբախորեն երևում է, որ նա «սոցիալական միջավայրի» արմատական վերափոխման, չարիքների վերացման գլխավոր ուժը համարում էր պրոլետարիատին, որը պետք է հենց ինքը կոփի սեփական երջանկությունը:

«Էվոլյուցիոնիզմը և ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ» աշխատությունում Շահումյանը պաշտպանում էր զարգացման ընդհանուր շղթայի երկու անխզելի օղակների՝ աստիճանական զարգացման ու հեղափոխության միասնության վերաբերյալ մարքսյան ուսմունքը:

Էվոլյուցիայի ու հեղափոխության փոխհարաբերության հարցը քննարկելով հասարակական կյանքի փաստերով, Շահումյանը հիմնավորում էր հեղափոխության օրինաչափ ու անխուսափելի բնույթը: Նա գտնում էր, որ հասարակական կյանքում էվոլյուցիոն զարգացումն ի վերջո հասցնում է անխուսափելի կատակլիզմների, ցնցումների, հեղափոխության, որն ավարտում է հասարակության էվոլյուցիոն զարգացման որոշ ցիկլը և ճանապարհ հարթում նրա հետագա զարգացման համար:

Նա խորտակիչ քննադատության ենթարկեց բուրժուական գաղափարախոսությունն ու ռևիզիոնիզմն այն բանի համար, որ դրանք փորձում էին միմյանց հակադրել զարգացման այդ երկու անխզելի կողմերը, բացարձականացնել էվոլյուցիան, ժխտել հեղափոխության անհրաժեշտությունն ու օրինաչափ բնույթը: «Կարելի՞ է արդյոք ռևոլյուցիոնիզմը համարել էվոլյուցիոնիզմի հետ անհամատեղելի և նրան հակասող,— հարցնում է Շահումյանը:— Կարելի՞ է արդյոք հեղափոխությունները հայտարարել պատմականորեն անօրինաչափ, վնասակար, «անարդար», «անբարոյական», ուստի և դատապարտելի ակտեր: Դրված հարցերին դրական պատասխան տալու համար պետք է լինել անհուսալի կույր ֆիլիստեր կամ ակընհայտ սրիկա, իր դարն անցրած և ամբողջ հասարակությանը ճնշող հին կարգերի կողմնակից» (էջ 130):

Ստ. Շահումյանն ազգային հարցի խոշոր ու ճանաչված տեսաբան էր: Ազգային հարցի վերաբերյալ նրա մի շարք հիանալի աշխատությունները, ինչպես նաև հատորում զետեղված «Մանիֆեստ» հայ սոցիալ-դեմոկրատների միության», «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» ու բազմաթիվ այլ գործեր ցույց են տալիս, թե նա ինչպիսի խորությամբ ու նրբությամբ գիտեր հասարակական կյանքի այդ ամենանկնոտ պրոբլեմներից մեկը: Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում ազգային հարցի վերաբերյալ Շահումյանի գիտելիքները: «Իսկրայում» տպագրված «Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի մասին» հատուկ հոդվածում Վ. Ի. Լենինը գրում էր. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու

նրա ուշագրավ փորձը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 411):

Ավելի ուշ, Լենինն առաջարկում էր Շահումյանին՝ միատեղ մշակել «ազգերի իրավահավասարության և ազգային փոքրամասնությունների իրավունքների պաշտպանության մասին» օրինագծի նախագիծը՝ այն պետական դումա մտցնելու համար:

Առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում հատորում զետեղված «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» աշխատությունը: Այստեղ Շահումյանին հետաքրքրում են թե՛ ազգի ներսում եղած ներհակ ուժերի պայքարն ու ազգային պրոբլեմը, թե՛ ազգային փոխհարաբերություններն ու ազգերի ապագայի խնդիրը... Թվարկված որ պրոբլեմն էլ քննարկում է Շահումյանը, մոտեցումը մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից է: Նա ազգը չի դիտում ինչ-որ ինքնաբավ, մեկընդմիշտ տրված ամբողջություն, ինչպես փորձում են ներկայացնել բուրժուական գաղափարախոսները: Ընդհակառակը, նա հաստատում է մարքսիստական այն դրույթը, որ ազգը, լինելով պատմական կատեգորիա, միաժամանակ պառակտված է հակադիր ուժերի, որ ազգի ներսում և ազգերի միջև բախվում են տիրող դասակարգերի շատ ռեալ շահերը:

Մարքսիզմի հիմնադիրների նման, Շահումյանը ազգային հարցը դիտում է որպես դասակարգային հարցի բաղկացուցիչ մաս: Նա գրում էր, որ «ազգային հակասությունները և ներհակությունները անհրաժեշտ բաղկացուցիչ մասն են այն մեծ սոցիալական հակասության, որ գոյություն ունի ժամանակակից բուրժուական հասարակության մեջ և որը կոչվում է կապիտալի և աշխատանքի պրոբլեմ» (էջ 255):

Նա վճռականորեն ընդգծում էր, որ ազգային հակասության լիակատար վերացումը կամ ազգային հարցի արմատական լուծումն անհնարին է կապիտալիզմի պայմաններում:

Ստ. Շահումյանի այս աշխատությունում հետաքրքիր դատողություններ կան ազգայինի ու միջազգայինի փոխհարաբերության վերաբերյալ: Հաստատելով, որ իսկական ազգային շահերը երբեք չեն հակադրվում ինտերնացիոնալ շահերին, նա, միաժամանակ, իբրև հետևողական մարքսիստ, գտնում էր, որ ազգային և միջազգային սկզբունքների ընդհարման ժամանակ մեր համակրանքն ընդհանրապես պետք է լինի միջազգային սկզբունքի կողմը: Այդպիսի հետևությունը Շահումյանը բխեցնում էր պրոլետարիատի օբյեկտիվ, տնտեսական դրությունից, որովհետև նա այն դասակարգն է, որը մարմնավորում է իր մեջ միջազգայնության գաղափարը:

Ինչպես նկատում ենք, Շահումյանի վերոհիշյալ հարցադրումը, փաստորեն, անհրաժեշտության դեպքում ազգային շահերը ինտերնացիոնալ շահերին ենթարկելու վերաբերյալ Լենինի պահանջի հաստատումն էր:

Այդ ամենի հետ մեկտեղ Շահումյանը պահանջում էր բոլոր ազգերի իրավահավասարություն, նրանց քաղաքական ինքնորոշման իրավունք: Նա ազգային ճնշման, ազգային խտրականության ու երկպառակության, ազգային լեզուների նկատմամբ ամեն մի բռնության անողոք հակառակորդներից մեկն էր: Շահումյանը մեծ դիալեկտիկ էր և վճռականորեն պահանջում էր ազգային հարաբերությունները քննարկելիս մշտապես կողմնորոշվել դիալեկտիկական մեթոդով, «միշտ ի նկատի ունենալ ժամանակի և տեղի պայմանները» (էջ 262):

Ստ. Շահումյանը ժողովուրդների բարեկամության ջահակիր էր: Հատորում զետեղված «Ելիզավետոպոլի» դեպքերի առիթով», «Մամուլի տեսություն», «Վերջին դեպքերը», «Հայթուրքական պրովոկացիան» և այլ հոդվածներում նա մերկացնում էր ցարիզմի ազգահալած, կայսրության տերիտորիայում ապրող ազգերին միմյանց հետ գժտեցնելու ու թշնամացնելու քաղաքականությունը, բացահայտում նացիոնալիստական կուսակցությունների բռնած տմարդի դիրքը ժողովուրդների բախտի համար այդ ճգնաժամային մոմենտներին: Նա անդուլ կերպով պայքարում էր մասսաների դասակարգային ինքնագիտակցության զարգացման, ժողովուրդների միջև թշնամանքը վերացնելու, նրանց բարեկամությունն ամրապնդելու համար: Մասնավորապես 1905—1907 թթ. Շահումյանը տիտանական ջանքեր գործադրեց հայ և ադրբեջանական ժողովուրդների միջև ցարիզմի հրահրած սպանդին վերջ տալու, երկրամասի աշխատավորությանը հեղափոխական շարժումների մեջ ընդգրկելու համար:

Մահու չափ սարսափելով ժողովրդական ցասումից, անող հեղափոխական շարժումներից, տակավին մեր դարասկզբին ցարական կառավարությունը գործողության մեջ դրեց իր «մութ» ուժերը, միմյանց դեմ հրահրեց հպատակ ազգերին և Անդրկովկասում սարքեց այն ստրյունյալի պրովոկացիան, որը հայտնի է հայադրբեջանական կոտորած անունով: Դրացի ժողովուրդների համար այդ դժնդակ պայմաններում Ստ. Շահումյանը եղբայրասպան կոտորածների մասնակիցներին անդադրում բացատրում էր, որ այդ ոճրի իսկական հեղինակը ցարիզմն է, որ դրա հիմքում ընկած են ազգային բուրժուազիաների տնտեսական անտագոնիզմն ու նրանց շահերը, որ հայ և ադրբեջանական ժողովրդական մասսաները, որոնք թե՛ տնտեսապես և թե գաղափարապես ընտրկացված են իշխող դասակարգերի կողմից, նրանց պրովոկացիայի զոհն են, նրանց ձեռքում կույր գործիք: Սուր քննադատության ենթարկելով ազգայնական կուսակցություններին այն բանի համար, որ նրանք այդ դժվարին պահին է՛լ ավելի մթագնեցին մասսաների գիտակցությունը, Շահումյանը միաժամանակ երկրամասի հասարակական-քաղաքական ուժերին խորհուրդ էր տալիս խորապես իմաստավորել տեղի ունեցող իրադարձությունները, հասկանալ կառավարության ստոր դավերը, չնույնացնել ցարիզմն և ռուս ժողովրդի շահերը, չենթարկվել պրովոկացիային: Նա գտնում էր, որ անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել մասսաների գիտակցությունը, որպեսզի նրանք ըմբռնեն եղբայրասպան կոտորածի ամբողջ ահավորությունը երկու կողմերի ու երկրամասի մյուս ժողովուրդների համար, միավորեն իրենց ուժերը բռնակալության դեմ պայքարելու նպատակով:

Ստ. Շահումյանի Երկերի առաջին հատորում զետեղված բազմաթիվ հոդվածներ, նամակներ ու թղթակցություններ նվիրված են ազգայնական կուսակցությունների և, մասնավորապես, դաշնակցության գաղափարախոսության ու գործելակերպի քննադատությանը: «Երևանից», «Դրոշակի» 1905 թ. № 6-ում զետեղված փաստաթղթերի առթիվ», «Դաշնակցությունը «պրոլետարիատի ղեկավար», «Դաշնակցական համագումարը Էջմիածնում», «Հնչակյանների առաջին դեբյուտը», «Առաջիկա ընտրությունները Թիֆլիսում և «Դաշնակցություն» կուսակցությունը», «Երիտասարդ դաշնակցականների պրոկլամացիան» ու այլ աշխատություններում Ստ. Շահումյանը լենինիզմի դիրքերից մինչև հիմքերը բացահայտում է ազգայնական կուսակցությունների դասակարգային էությունը, տալիս նրանց ամբողջական բնութագիրը, մերկացնում նրանց գաղափարախոսության բուրժուա-նացիոնալիստական էությունը, նրանց գործելակերպի կործանաբերությունը մեր ժողովրդի համար:

Ստ. Շահումյանը կուսակցությունների դասակարգային էության գնահատման հարցում ամբողջովին ելնում էր Լենինի առաջադրած չափանիշից՝ ոչ թե նրանց, այսպես կոչված, տեսությունից ու ծրագրից, այլ կոնկրետ գործերից: Նա խոր դիալեկտիկական մոտեցում էր դրսևորում կուսակցությունների ու նրանց գործունեության վերլուծության նկատմամբ, տեսնում էր ազգայնական կուսակցությունների սոցիալական կազմի խայտաբղետությունը, նրանց ծրագրի ու տակտիկայի, շարքային կազմի ու բյուրոկրատիայի միջև եղած հակասությունները:

Իր փոթորկալից կյանքի բոլոր փուլերում Շահումյանն անողոք ու անզիջում կռիվ է մղել հատկապես բուրժուա-նացիոնալիստական «դաշնակցություն» կուսակցության սուբյեկտիվ իդեալիստական գաղափարախոսության ու նրա արկածախնդրական գործելակերպի դեմ: Հայտնի է, որ դաշնակցությունն իր գոյության ընթացքում բազմիցս փոխել է իր գույնը, կերպարանափոխվել՝ մասսաներին իր ազդեցության ոլորտում պահելու, բուրժուազիայի նպատակներին ծառայեցնելու համար: Նա մերթ հագել է «հեղափոխականի», մերթ «սոցիալիզմի» և նույնիսկ «պրոլետարիատի միակ ղեկավար» կուսակցության դիմակ, անընդհատ երեսպաշտություն է արել՝ աշխատավոր մասսաներին հեղափոխական շարժումներից հեռու պահելու նպատակով: Ժողովրդի քաղաքական ինքնագիտակցությունը զարգացնելու, նրան նացիոնալիզմի թույնից ազատագրելու և հեղափոխական շարժումների մեջ ներգրավելու համար անհրաժեշտ էր բացահայտել դաշնակցության բուրժուական էությունը, մերկացնել նրա կործանաբեր քաղաքականությունը:

Ստ. Շահումյանի համար դաշնակցության բուրժուական էությունը երբեք կասկած չի հարուցել: Տակավին մեր դարասկզբին, խոսելով դաշնակցության այսպես կոչված «սոցիալիստականության» մասին, նա զայրույթով գրում էր. «Ինչ տեսակ վարագույրով էլ որ ծածկվեն, ինչքան էլ որ «դաշնակցականների» ականջից բռնած դեպի սոցիալիստական բանակ քարշ տան իրանց արժանավոր բարեկամ «սոցիալիստ-հեղափոխականները»— հայ պրոլետարիատը չի խաբվի:— Նա շատ լավ է ճանաչում նրանց, մի րոպե անգամ չի կասկածում, որ «դաշնակցությունը» իր ամբողջ էությամբ բուրժուական կուսակցություն է» (էջ 107):

Այն ժամանակ, երբ ռուսական հեղափոխությունը տարածվում էր երկրով մեկ՝ իր ալիքների մեջ վերցնելով նորանոր շրջաններ, մասսային ձեռքից բաց չթողնելու, նրա ուշադրությունը հեղափոխական շարժումներից շեղելու, նրա խիղճն ու գրպանը բուրժուազիային ծառայեցնելու նպատակով դաշնակցությունն անցավ այսպես կոչված «կովկասյան գործունեության»՝ իրեն հայտարարելով «պրոլետարիատի միակ ղեկավար» կուսակցություն: Շահումյանը ստիպված էր բազմիցս զբաղվել դաշնակցության քողազերծմամբ՝ մասսաներին նրա իսկական դեմքը պարզելու համար:

Փաստական հարուստ նյութի, դաշնակցության կոնկրետ գործերի վերլուծությամբ նա համոզիչ կերպով ցույց էր տալիս, որ դաշնակցությունն իրեն անվանում էր «հեղափոխական» կուսակցություն, որպեսզի թույլատրելի ու անթույլատրելի բոլոր միջոցներով մարտնչի հեղափոխության դեմ: Դաշնակցությունը «սոցիալիզմի» դիմակ հագավ հենց սոցիալիզմի դեմ ամենավճռական պայքար մղելու համար: Շահումյանն իր աշխատություններում քայլ առ քայլ ցույց էր տալիս, որ չըմբռնելով նոր սկսված՝ պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի ոգին, ղեկավարվելով կովկասահայ բուրժուազիայի նենգ, գծուծ շահերով, չարաշահելով արևմտահայության ազատագրության արդար ձգտումները, դրանք կախման մեջ դնելով Եվրոպայի իմպերիալիստական տերությունների բարյացակամությունից, անընդհատ սպեկուլյացիա կատարելով ազգային նուրբ լարերի հետ, դաշնակցությունն իր խելացնոր գործողություններով փաստորեն հայ ժողովրդի կենսական շահերը զոհաբերեց բուրժուազիայի ֆանտաստիկ նպատակներին:

Ժողովածուում խորապես բացահայտված են դաշնակցության՝ «ամենայն հայոց բռնակալության» ստոր գործողությունները ռուսական առաջին հեղափոխության, հայ-ադրբեջանական կոտորածների ժամանակաշրջանում:

Մարքսիզմ-լենինիզմի անաղարտությունը պաշտպանելու, դաշնակցության գաղափարախոսության ու գործելակերպի մերկացման նըպատակը հետապնդող Շահումյանի աշխատությունները այսօր էլ չեն կորցրել իրենց թարմությունը և մեթոդոլոգիական նշանակություն ունեն այդ հարցերի հետագա ուսումնասիրության համար:

Մեկ գրախոսականում ընդգրկել այն բոլոր խնդիրները, որոնք քննարկված են Ստ. Շահումյանի Երկերի առաջին հատորում, պարզապես անհնար է: Դրանք այնքան բազմազան ու բազմաբնույթ են, որ յուրաքանչյուրի համար թերևս անհրաժեշտ է հատուկ ուսումնասիրություն: Էականը, սակայն, այն է, որ ըսկըսված է մի հիանալի գործ:

Ստ. Շահումյանի Երկերի լիակատար ժողովածուի առաջին հատորը գեղեցիկ նվեր է մեր աշխատավորությանը, հանրապետության կուսակցական կազմակերպություններին, կարևոր իրադարձություն բոցաշունչ լենինյանի ծննդյան 100-ամյա հոբելյանի նախօրյակին:

Բ. Հ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

# Ուշագրավ աշխատություն

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ղեկավար դերի լուսաբանմանն է նվիրված Հ. Ս. Օգանեսովի մենագրությունը[1]: Այդ գիտական ուսումնասիրությունը հեղինակի երկար տարիների տքնաջան աշխատանքի և լուրջ պրպըտումների արգասիքն է:

Հեղինակը կարողացել է ստեղծել հաջողված աշխատություն՝ արդիական կարևոր պրոբլեմի մասին, գիտական շրջանառության մեջ է դրել բավականին հարուստ փաստական նյութեր և տեսական ընդհանրացումների ու եզրահանգումների միջոցով հիմնավորել իր շոշափած պրոբլեմի կարևորությունը:

Դրվատանքի արժանի են հեղինակի քննարկած աշխատությունների անաչառ գնահատումը, դրանց գիտական արժանիքների, թերությունների ու վրիպումների բացահայտումը:

Աշխատության էջերում ճիշտ մեկնաբանվում են կոմունիստական շինարարության պրակտիկայի, քաղաքականության ու տեսության հարցերը, նշվում կուսակցության ղեկավար դերը հասարակության հեղափոխական վերափոխման պրոցեսում, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում և արդի էտապում սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության բնագավառում:

Մենագրության առաջին գլխում վեր են հանված այն մեծագույն դժվարությունները, որոնք ծառացել էին սովետական ժողովրդի առջև շահագործող դասակարգերի իշխանության տապալումից և քաղաքացիական պատերազմից հետո: Հետամնաց ագրարային երկրի քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման հետ միասին, կուսակցությունը, առաջնորդվելով սոցիալիզմի կառուցման լենինյան հանճարեղ պլանով, կարողացավ մոբիլիզացնել մեր անծայրածիր երկրի բոլոր ուժերն ու հնարավորությունները և պատմական կարճ ժամանակահատվածում սովետական երկիրը դուրս բերել աշխարհի տնտեսապես զարգացած երկրների շարքը:

Կոմունիստական շինարարության պրակտիկան լիովին հաստատում է ծրագրային այն դրույթը, որ կուսակցության՝ հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերն աճում է կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում, աստիճանաբար ուժեղանում է նրա ազդեցությունը մասսաների վրա, և դա վճռականապես պայմանավորված է կուսակցության ճիշտ քաղաքականությամբ, նրա կազմակերպությունների ակտիվ գործունեությամբ:

Գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում կոմկուսակցությունը և սովետական կառավարությունը բացառիկ կարևոր նշանակություն են տալիս տնտեսական ու սոցիալական բարդ պրոբլեմները գիտական բարձր մակարդակով լուծելու գործին՝ նույնը պահանջելով բոլոր կուսակցական, սովետական մարմիններից և կազմակերպություններից:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը համակողմանի կատարելագործում են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների կառավարման աշխատանքը, առաջադրում նորանոր խնդիրներ, որոնց լուծումը հսկայական նշանակություն ունի մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունն ապահովելու համար:

Հեղինակը փաստական հարուստ նյութի հիման վրա ցույց է տալիս, թե ինչպես է կուսակցությունը ժամանակին ու հետևողականորեն լուծում կյանքի առաջադրած բարդ պրոբլեմները: 1965 թ. ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը նշեց, որ արդյունաբերության ղեկավարման համակենտրոնացումը սոցիալիստական սիստեմի պայմաններում հնարավոր է միայն ղեկավարման ճյուղային սկըզբունքի կիրառմամբ: Պլենումը, այնուհետև ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան, հաշվի առնելով ժողովրդական տնտեսության արտադրատեխնիկական առանձնահատկությունները, ընդունեցին համապատասխան որոշումներ՝ ինչպես միութենական, նույնպես և հանրապետական ճյուղային մինիստրություններ ստեղծելու մասին: Պլենումը փաստորեն նոր փուլ նշանավորեց արդյունաբերության կառավարման ասպարեզում, նրա առաջադրած պահանջների իրագործումը հսկայական չափով բարձրացրեց

[1] Г. С. Оганесов. Возрастание руководящей роли КПСС на современном этапе. Изд. «Айастан», 1975 г., стр. 346.

կուսկազմակերպությունների քաղաքական կազմակերպական աշխատանքի մակարդակը ողջ երկրում:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման կարևորագույն բնագավառներից է գյուղատնտեսությունը, որի ղեկավարման հարցերը ևս մենագրության հեղինակի տեսադաշտում են: Հասկանալի է, որ մեր երկրի առաջընթացի ներկա փուլում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման տեմպերով է նաև պայմանավորված ժողովրդատնտեսական պլանների իրագործման հաջողությունը: Մինչդեռ, ինչպես նշում է հեղինակը, երկար տարիներ, գյուղատնտեսության ղեկավարման լուրջ թերությունների հետևանքով, էկոնոմիկայի այդ ճյուղի մակարդակը չէր համապատասխանում ներկայացվող պահանջներին, չէին կատարվում հողագործական և անասնապահական մթերքների արտադրության պլանները:

Աշխատության մեջ բազմաթիվ թվեր ու փաստեր են բերված՝ ցույց տալու այն դրական արդյունքները, որոնք առկա են կուսակցության ագրարային քաղաքականության կիրառման ասպարեզում, քաղաքականություն, որի սկզբունքային հիմքերը մշակեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը: Ագրարային քաղաքականության կենսագործման արդի ժամանակահատվածում կուսակցությունը վարում է փոխադարձ շաղկապված արտադրա-տեխնիկական, տնտեսական, սոցիալ-քաղաքական խնդիրները վճռելու հաստատուն կուրս: Եվ արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ մեր երկիրը կուսակցության ղեկավարությամբ ապահովել է ո՛չ միայն հողագործության ու անասնապահության մթերքների արտադրության արագ և կայուն տեմպեր, այլև նշանակալի քայլեր է կատարել գյուղի ու քաղաքի միջև եղած էական տարբերությունների (աշխատանքի և կենցաղի պայմաններ) վերացման ասպարեզում:

Հեղինակը տեսական կարևոր հարցեր է բարձրացրել մենագրության երրորդ գլխում՝ «Կուսակցության դերը սոցիալական հարաբերությունների զարգացման ասպարեզում»: Այստեղ հանգամանորեն քննարկվում է զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական սեփականության ձևերի, ազգային հարաբերությունների հետագա կատարելագործման և այդ ասպարեզում ՍՄԿԿ ղեկավար դերի աճի պրոբլեմները:

Հեղինակը պատշաճ մակարդակով վերլուծում է սոցիալիստական սեփականության ձևերը, դրանց ձուլման հեռանկարները և շեշտում, որ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն իր զարգացման ընթացքում ընդհուպ մոտենում է համաժողովրդական սեփականությանը: «Այդ ձևերի հետագա կատարելագործումը նշանակում է նրանց աստիճանական մերձեցում, իսկ հետագայում և ձուլում համաժողովրդական կոմունիստական սեփականության հետ» (էջ 151):

Արդի ժամանակաշրջանում կոմունիստական շինարարության կարևոր պրոբլեմներից է ազգային հարցը, որը որոշակի տեղ է գրավել մենագրության մեջ: Հատկապես բարձր մակարդակով են շարադրված կուսակցության ղեկավարությամբ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ամրապնդման, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների մերձեցման գործում ռուս մեծ ժողովրդի, ռուսաց լեզվի դերի խնդիրները: Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, մեր օրերում ազգային հարցի հետագա զարգացումը, որպես հասարակության առաջընթացի օրինաչափ երևույթ, ընթանալու է բոլոր ժողովուրդների ծաղկման ու մերձեցման ճանապարհով:

Հ. Ս. Օգանեսովը բանիմացությամբ շարադրում է աշխատավորության կոմունիստական դաստիարակության մարզում կուսակցության դերի բարձրացմանն առնչվող հարցերը, համակողմանի ցույց տալիս գաղափարական աշխատանքի կարևորությունը կոմունիզմի կառուցման ներկա փուլում:

Մենագրության մեջ մանրազնին ու գիտականորեն քննարկվում են հետևյալ հարցերը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը որպես մեր հասարակության բոլոր կազմակերպությունների ղեկավար կորիզը, կոմունիստական շինարարության արդի էտապում աշխատավորների դեպուտատների սովետների դերի բարձրացումը, աշխատավորության մասսայական կազմակերպությունների գործունեության հետագա ընդլայնումն ու ակտիվացումը:

Աշխատության մեջ կարմիր թելի պես անցնում է այն գաղափարը, որ այս բոլոր օղակներում ապահովվում է կուսակցության ղեկավար, ուղղություն տվող դերը:

Վերջին՝ 6-րդ գլուխը, որն ունի «Ներկուսակցական կյանքի կատարելագործումը ՍՄԿԿ ղեկավար դերի աճի կարևորագույն պայմանն է» վերտառությունը, ամբողջ մենագրության հանգուցակետն է: Այստեղ հեղինակը, շրջանառության մեջ դնելով հանրապետական, մարզային, շրջանային, նույնիսկ սկզբնական կուսկազմակերպությունների հսկայական քանակությամբ կուսակցական փաստաթղթերը, կարողացել է արտացոլել ներկուսակցական լիարյուն կյանքը, նրա կատարելագործման խնդիրները: Հաջող են շարադրված հատկապես կուսակցական կյանքի լենինյան նորմերի հետագա զարգացման և կենսագործման, կուսակցության շարքերի աճի ու նրա կազմի բարելավման, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության առավել բարձրացման և այլ հարցեր:

Հ. Օգանեսովը սկզբունքային, գիտական քննադատության է ենթարկել իմպերիալիզմի ջատագովներին, որոնք աղավաղելով իրականությունը, հերյուրանքներով ցանկանում են նսեմացնել կուսակցության ղեկավար դերը արդի պայմաններում:

Հ. Օգանեսովը շնորհակալ գործ է կատարել՝ ընթերցողների սեղանին դնելով մի հաջողված մենագրություն՝ նվիրված արդիականության կարևորագույն տեսական, քաղաքական և գործնական նշանակություն ունեցող հարցերից մեկին՝ արդի փուլում ՍՄԿԿ ղեկավար դերի աճին:

Սակայն մենագրությունը զերծ չէ նաև թերություններից ու բացերից: Աշխատության մեջ հեղինակը բազմաթիվ առիթներով անդրադառնում է բուրժուական գաղափարախոսությանը, նրանց ցիտում ու քննադատում, մինչդեռ, ըստ իս, անհրաժեշտ էր միայն մեկ տեղ, առաջին գլխի երրորդ ենթագլխում, որտեղ խոսվում է հակակոմունիզմի գաղափարական դիվերսիայի գլխավոր նպատակի մասին, կենտրոնացնել բոլոր նյութերն ու կարծիքները, դրանք չցրել աշխատության տարբեր գլուխներում (տե՛ս 63, 98, 235, 276—279, 283 և այլ էջեր):

Խոսելով մեր կուսակցության ստեղծագործական մոտքի մասին՝ Հ. Օգանեսովը միայն մեկ օրինակ է բերում, այն էլ կոմունիստական շաբաթօրյակից, բաց թողնելով բազմաթիվ այլ փաստեր՝ սովետները, կարմիր գվարդիական, սոցիալիստական տեղափոխության օրինաչափությունները, նոր տնտեսական քաղաքականությունը և այլն: Մեր կարծիքով, միայն կոմունիստական շաբաթօրյակով չի կարելի բավարարվել:

Աշխատության մեջ (խմբագիր՝ Վ. Մուրադյան), ցավոք, կան խմբագրական կարգի վրիպումներ: Հաճախ ենք հանդիպում կրկնողությունների (53, 54, 56, 108 և մի շարք այլ էջեր): Մեկ պարբերության մեջ (25-րդ էջում), որը բաղկացած է ութ տողից, վեց անգամ կարդում ենք «մասսաներ» բառը: Սակայն այդ թերությունները բնավ չեն նսեմացնում մենագրության արժանիքները:

Աշխատությունն ունի նաև պրակտիկ նշանակություն, հատկապես կուսակցական աշխատողների ու պրոպագանդիստների համար. հեղինակը, խորամուխ լինելով կուսակցական մարմինների ղեկավարման պրակտիկայում, միաժամանակ առաջադրում է մի շարք կարևոր խնդիրներ:

Մեր կարծիքով անհրաժեշտ է սույն մենագրության հայերեն հրատարակությունը:

Դ. Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ
Պրոֆեսոր

# Մեր նյութերի հետքերով

Հայաստանի կոմկուսի Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հովհաննիսյանը հայտնում է, որ մեր ամսագրի 1975 թ. մարտի համարում տպագրված «Առաջատար ճյուղին մշտական հոգատարություն» վերնագրով հոդվածը քննարկվել է կուսշրջկոմի բյուրոյի 1975 թ. ապրիլի 29-ի նիստում:

Բյուրոն արձանագրել է, որ հոդվածի փաստերը համապատասխանում են իրականությանը. ամսագրի կողմից շրջանի այգեգործության վիճակի վերլուծությունն ու իրավացի քննադատությունը գործնական օգնություն է շրջանի կուսկազմակերպությանը՝ այդ ճյուղի զարգացման բնագավառում եղած սխալները և թերությունները վերացնելու, նրա վարումն արդի պահանջների մակարդակին բարձրացնելու գործում:

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ., (պատ. քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՉՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):**

Адрес редакции: 375033 Ереван- 33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 04175 Պատվեր 2324 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.600 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 7/X 1975 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:*



# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի ժողովածու, *հ. 3: «Հայաստան» հրատ., 1975:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Զեկուցում 1905 թ. հեղափոխության մասին: *«Հայաստան» հրատ., 1975:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Ձախ» երեխայության և մանր բուրժուականության մասին: *«Հայաստան» հրատ., 1975:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ հեղափոխությունում: *«Հայաստան» հրատ., 1975:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Արդի փուլում ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության հիմնական հարցերի մասին: *Ճառեր և զեկուցումներ (երկու հատորով), հատ. II: Մ.,* «Политиздат», *1975:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին: *Ճառեր և հոդվածներ: Երկրորդ, լրացված հրատ.: Մ.,* «Политиздат», *1975:*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ— Հոդվածներ և ճառեր *(1941—1946): Մ.,* «Политиздат», *1975:*

Առանց նրանց մենք չէինք հաղթի: *Հոկտեմբերյան հեղափոխության, քաղաքացիական կռիվների և սոցիալիստական շինարարության մասնակից կանանց հիշողությունները:* «Политиздат», *1975:*

Վ. Ի. ԿՈՒԿԱՆՈՎ— Գալիքի ակունքների մոտ: *Մ.,* «Политиздат», *1975:*

*Վ. Ի. Լենինի կյանքին ու հեղափոխական գործունեությանը նվիրված այս գիրքը նախատեսված է ընթերցող լայն զանգվածների համար:*

Աշխարհի կանայք խաղաղության մասին: *Փաստաթղթերի, հոդվածների, ճառերի և ասույթների ժողովածու: Մ.,* «Политиздат», *1975:*

Ա. Գ. ԿՈՎԱԼՅՈՎ— Կոլեկտիվը և ղեկավարման սոցիալ-հոգեբանական պրոբլեմները: *Մ.,* «Политиздат», *1975:*

Հ. ՄԵԼԻՔՅԱՆ— Հեղափոխական շարժումները Կովկասյան բանակում: *«Հայաստան» հրատ., 1975:*

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ— Հայ ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմում: *Ե., «Գիտելիք» ընկերության հրատ., 1975:*

Ջ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Դասախոսություններ ՍՍՀՄ ժողովուրդների պատմությունից: *Ե., «Լույս» հրատ., 1975:*

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ— Իմաստասիրությունը երկխոսություններում: *«Հայաստան» հրատ., 1975:*

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ— Հայ բուրժուաազգայնական կուսակցությունների դիրքորոշումը ռուսական առաջին հեղափոխության տարիներին *(1905—1907 թթ.): «Հայաստան» հրատ., 1975:*

Վ. Մ. ԻՎԱՆՆԵՆԿՈ— Ժողովրդատնտեսական պլանավորման մեթոդոլոգիան *(կատարելագործման պրոբլեմներ), Մ.,* «Экономика» *հրատ., 1975:*

Ա. Մ. ԿՐԻԼՈՎ— Կոլտնտեսությունների աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական զարգացման պլանավորման հարցերը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1975:*

Գ. Ա. ՕՐԱԵՎՍԿԱՅԱ, Ի. Ա. ԼԱՄԻԿԻՆ— Գյուղատնտեսական ձեռնարկությունների տնտեսական գործունեության վերլուծությունը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1975:*

Կառավարման պրոցեսների կազմակերպումը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1975:*

Գ. Ի. ՊՈՊՈՎ, Վ. Պ. ՌԵՇԵՏՆՅԱԿ— Օպերատիվ կառավարման կատարելագործումը կոլտնտեսություններում ու սովխոզներում: *Մ.,* «Экономика» *հրատ., 1975:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ՖԻԼՏՐ

*Վորոնեժի տեխնոլոգիական ինստիտուտում մշակվել են երկշերտ ֆիլտրեր մետաղակերամիկայից: Դրանք պատրաստում են նիկելի փոշին ճնշման տակ եռացնելով: Ֆիլտրերը նախատեսված են փոշուց և այլ պինդ մասնիկներից գազերը զտելու համար: Զտման բարձր արդյունավետությունը, ռեգեներացիայի ամրությունը, ջերմակայունությունն ու պարզությունը դրանք կիրառելի են դարձնում քիմիայում, նավթարդյունաբերությունում, մետաղաձուլության մեջ և այլ ճյուղերում:*

## ԲԱԶՄԱՄՅԱ ՀԱՃԱՐ

*Համամիութենական սելեկցիոն-գենետիկական ինստիտուտում ստացել են հաճարի նոր՝ օռեսական բազմամյա սորտը, որը 4—5 տարի շարունակ կարող է աճել միևնույն տեղում, առանց վերացանքի: Որպես կերաբույս այն չափազանց հեռանկարային է. սեզոնում այն հնձում են 2—3, իսկ ջրելու դեպքում՝ 4—5 անգամ, որը հնարավորություն է ընձեռում ստանալու մեծ քանակությամբ կանաչ զանգված: Բազմամյա հաճարը բարձր բերք է տալիս նաև ոչ հարմարավետ հողերում: Սորտն աչքի է ընկնում ցրտադիմացկունությամբ, կայուն է հիվանդությունների, երաշտի նկատմամբ և չի պառկում:*

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՀԵՌԱԽՈՍ

*Չեխոսլովակյան «Տեսլա» արտադրամիավորումը թողարկում է ունիվերսալ հեռախոսներ, որոնք ծավալով ընդամենը երկու անգամ են մեծ սովորական ապարատներից: Իր ֆունկցիաներով այն կարող է մրցել մի ամբողջ հեռախոսակայանի հետ: Այդպիսի ապարատի օգնությամբ հիմնարկության ղեկավարը կարող է միաժամանակ խոսել մի քանի աբոնենտների հետ, գրանցել զրույցը մագնիտոֆոնի կամ դիկտաֆոնի վրա, միանալ հիմնարկության աշխատողների հեռախոսային խոսակցություններին, կազմակերպել հեռախոսային կոնֆերանսներ, կառավարել դիկտաֆոնով, լսել մագնիտոֆոնային կամ դիկտաֆոնային գրառումներ, կանչել ծառայողներին, միացնել «մտե՛ք» և «չմտնե՛լ» ազդանշանները:*

## ԱՊԱԿԻՆ ԵՎ ՊԱՅԹՅՈՒՆԸ

*Եթե ապակու մակերեսին կպցնեն բարակ պոլիկարբոնատային թաղանթ, ապա այդպիսի ապակին կարող է դիմանալ մինչև 7 մթնոլորտային պայթեցման ալիքի ճակատային ճնշման: Թաղանթը ստանում են ապակու մակերեսին հեղուկ պոլիմեր քսելով, որը պնդանում է մոտավորապես մեկ օրում:*

## ՍՊԻՏԱԿԵՂԵՆ ԹՂԹԻՑ

*Վերջին տարիներս լայն կիրառում են ստացել թղթից և չհյուսված թելանյութերից պատրաստված իրերը: Դրանց արտադրությունը զարգացած է հատկապես Ֆինլանդիայում: Օրինակ, թղթե սավանները, թեթև և տաք ծածկոցները շատ հարմար են ծննդատներում օգտագործելու համար: Պատրաստում են նաև սավաններ պոլիէթիլենի ատլասով: Դրանք լավ են ներծծում խոնավությունը և միաժամանակ խոնավադիմացկուն են: Այդպիսի նյութերից պատրաստում են վիրաբույժների խալաթներ, ծրարներ բժշկական գործիքների ստերիլիզացիայի համար, սփռոցներ: Այդ էժան իրերը օգտագործումից հետո այրում են կամ դեն նետում:*

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻ ՆՈՐ ՏԵՍԱԿ

*Բիրմինգհեմի համալսարանում (Անգլիա) մշակվել է պլաստմասսայի նոր տեսակ, որը քայքայվում է խոնավությունից և արևի ճառագայթներից: Նոր պլաստմասսայի համար հումք են ծառայում ծղոտը, փայտի թեփը, կարտոֆիլի կեղևը և այլն: Նոր պլաստմասսայից կարելի է պատրաստել շշեր և փաթեթներ սննդամթերքի համար: Պլաստմասսան հարմար է նաև այն առումով, որ օգտագործված տարան ոչնչացվում է:*